


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* ***http://www.armin.am***

*Էլ. փոստ՝* ***info@armin.am***

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՖԱԿՈՒԼՏԵՏ

ՊԵՏՐՈՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ
## (XV ԴԱՐԻ ԿԵՍ – XVIII ԴԱՐԻ ՎԵՐՋ)

ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆ
ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
2010

*ՀՏԴ 941(479.25) (042)*
*ԳՄԴ 63.3 (2Հ)*
*Հ 854*

***Տպագրվում է ԵՊՀ պատմության ֆակուլտետի խորհրդի երաշխավորությամբ***

***Խմբագիր՝ ՀՀ ԳԱ ակադեմիայի իսկական անդամ Հրաչիկ Սիմոնյան***

***Հովհաննիսյան Պ. Հ.***

***Հ 854 Հայ ազատագրական շարժումները (XV դարի կես - XVIII դարի վերջ). Դասախոսություններ/Պ. Հ. Հովհաննիսյան; խմբ.՝ Հր. Ռ. Սիմոնյան.-Եր.: ԵՊՀ հրատ., 2010.-116 էջ + 8 էջ ներդիր:***

*Դասախոսությունների սույն գրքում վերլուծվել են XV-XVIII դարերի հայ ազատագրական շարժման բոլոր նշանակալից դրսևորումները՝ ազատագրական լեգենդը, հայ-արևմտաեվրոպական դիվանագիտական բանակցությունները, XVIII դարի սկզբների հայոց ազատամարտի հերոսական դրվագները: Քննության են ենթարկվել Իսրայել Օրու, Հովսեփ Էմինի, Մադրասի քաղաքական խմբակի անդամների, Մովսես Սարաֆյանի, Հովսեփ Արղությանի և այլոց ազատագրական ոգորումներն ու հայացքները:*

*Նախատեսվում է ուսանողության և ընթերցող լայն շրջանների համար:*

***ՀՏԴ 941(479.25) (042)***
***ԳՄԴ 63.3 (2Հ)***

*ISBN 978-5-8084-1301-6*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Նվիրում եմ Մեծ Երազանքի*
*ճանապարհին ընկած ուսանողներիս՝*
***Վարդան Բախշյանի,***
***Վարդան Դալլաքյանի***
***և Թաթուլ Կրպեյանի***
*խնկելի հիշատակին*

## ԱՌԱՋԱԲԱՆ

Օտար տիրապետությունների դեմ հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարի պատմությունը, որը լի է հերոսական մաքառումներով ու հաղթանակներով, պարտություններով ու հիասթափություններով, ղարձյալ կրկնվող ազատագրական ճիղերով ամբողջությամբ կլանում են հայ ժողովրդի պատմությունը: Հայկական պետականության անկումից հետո (1375) շուրջ 550 տարի ազատագրական այդ ջանքերը կազմել են հայոց պատմության գլխավոր բովանդակությունն ու մեր ժողովրդի հիմնական կենսակերպը:

Հայ ազատագրական միտքը ձևավորվելով եկեղեցական միջավայրում, վերընձյուղվելով՝ իր ծիրի մեջ ընդգրկեց նաև աղնվականական ու առևտրական հասարակախավերի լավագույն ներկայացուցիչներին: Եթե շարժման առաջին փուլում (XV–XVII) դրան տոն տվողները Ս. Էջմիածնի գահակալներն էին կամ եկեղեցական միջավայրից դուրս եկած գործիչները (Ստեփանոս Ե Սալմաստեցի, Միքայել Ա Սեբաստացի, Հակոբ Դ Ջուղայեցի և ուրիշներ), ապա շուտով (XVIII դարում) ազատագրական ոգորումները դառնում են առևտրական հասարակախավի այնպիսի ներկայացուցիչների գործունեության իմաստը որպիսիք էին Իսրայել Օրին ու Պետրոս դի Սարգիս Գիլանենցը, Հովսեփ Էմինն ու Մովսես Բաղրամյանը, Շահամիր Շահամիրյանն ու Հովհաննես Լազարյանը:

Նշված ժամանակաշրջանի ազատագրական գաղափարաբանությունը՝ ապավինելով հինավուրց մարգարեություններին ու զանազան տեսիլներին, հայ ժողովրդի անկախության վերականգնման գործընթացը պայմանավորվում էր դրսից սպասվող օգնությամբ: Դրանով է

բացատրվում Եվրոպայի կաթոլիկ երկրների հետ բանակցություն-ների այն երկայն շղթան, որ աննկուն ու անպտուղ հյուսում էին հայ գործիչները:

Անսպասելիորեն, XVIII դարի 20-ական թվականներին, ազատա-գրական ոգորումներն ընթացան ոչ ավանդական ուղեգծով: Ապավի-նելով սեփական ուժերին՝ հայերը զինված պայքարի շնորհիվ, առանց դրսի դույզն իսկ օգնության, կերտեցին հայկական պետականության նորօրյա եղելություններն Արցախում և Սյունիքում:

Հատկանշական է, որ այս երկրորդ փուլում Հայրենիքի ազատա-գրության գաղափարն սկսում է բուռն հետաքրքրության առարկա դառնալ նաև գաղութահայ միջավայրում: Արևելյան Եվրոպայի, Ռու-սաստանի, Պարսկաստանի և Հնդկաստանի հայկական գաղթավայրե-րում եռանդուն գործունեություն է ծավալվում հայրենի երկրի ազա-տագրության համար: Կազմվում են ծրագրեր, նոր դիմումնագրեր են հղվում ժամանակի քաղաքական հզոր տիրակալներին: Ստեղծված իրադրության պայմաններում հայ ազատագրական միտքը XVIII դարի սկզբներից դիմադարձվում է դեպի Ռուսաստանը՝ վերջինիս օգնու-թյան մեջ տեսնելով դարերի իր Մեծ Երազանքի իրականացման հնա-րավորությունը: Բայց տվյալ պատմաշրջանում այդ Երազանքն իրա-կանություն դառնալու որևէ պայման չուներ:

Հայ ազատագրական շարժման դասերը լավագույնս են հիմնավո-րում սեփական ուժերին ապավինելու իրատեսական գործելակերպը: Եվ դրա փայլուն ապացույցն այսօր Արցախի ազատագրական պայ-քարի արդյունք Լեռնային Ղարաբաղի Հանրապետության իրողու-թյունն է:

# I. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՆԱԽԱՔԱՅԼԵՐԸ

## 1. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ: ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԼԵԳԵՆԴԸ

*XI-XIV դարերի բուռն ու փոթորկալից իրադարձությունները Հայաստանում իրենց խոր, անջնջելի կնիքը թողեցին հայ կյանքի վրա: Մեկը մյուսին հետևող քաղաքական ցնցումները, Բագրատունյաց և Կիլիկիայի հայկական թագավորությունների կորուստները (1045, 1375), քոչվորական ցեղերի ավերիչ արշավանքներն ու երկարատև տիրապետությունը, հայ ժողովրդի հսկայական զանգվածների հարկադրական արտագաղթերն ու օտար ցեղերի վերաբնակեցումը Հայաստանում չափազանց թուլացրին հայերի դիմադրական կարողությունները: Սելջուկ-թուրքերը, իսկ այնուհետև թաթար-մոնղոլները, ըստ էության, առանց լուրջ դիմադրության գրավեցին Հայաստանը: Առանձին քաղաքների և ամրոցների դիմադրությունը, հերոսության և անձնազոհության առանձին դեպքերը չէին կարող փրկել իրավիճակը. Հայաստանը համեմատաբար հեշտությամբ նվաճվեց բարբարոսական ցեղերի կողմից:*

*Տեղի ունեցածը, անշուշտ, բացատրելի է, եթե նկատի ունենանք, որ քոչվորների արշավանքներին նախորդած բյուզանդական տիրապետության կարճատև շրջանում (1045-1065) հույներն անխոհեմությամբ ու հանցավոր անհեռատեսությամբ ցրեցին հայկական զինական ուժերը: Նրանք Հայաստանում վարում էին հարկային ու տնտեսական ծանր քաղաքականություն: Հայոց եկեղեցուն պարտադրվեցին անտեղի և անվերջանալի աստվածաբանական խճողված վեճեր, որոնց լուծումը հունական կողմը տեսնում էր հայերի դավանափոխության մեջ: Այս ամենը խիստ ժժռհություն էր առաջ բերում բյուզանդական իշխանությունների նկատմամբ, ու երբ սկսվեցին սելջուկյան արշավանքները, հայերը եկվորներին չդիմադրեցին ոչ միայն այն պատճա-*

*ռով, որ չունեին համապատասխան զինական ուժեր, այլև այն պատճառով, որ դա նշանակելու էր պաշտպանել Հայաստանում հաստատված բյուզանդական ատելի վարչակարգը: Հայոց բազմաքանակ բանակը (շուրջ 100 հազար զինվոր), որ Մերձավոր Արևելքի ամենամարտունակ ու կարգապահ զինական ուժերից էր, ցրված էր ու ոչնչացված: Այդ բանակը, որին դարեր շարունակ վիճակված էր պաշտպանել Արևմուտքը՝ Հայաստանը դարձնելով բնական պատնեշ արևելյան հորդաների անընդհատ կրկնվող արշավանքների ժամանակ, այլևս չկար. դեպի Բյուզանդիա և Արևմուտք տանող ճանապարհները մնացել էին անպաշտպան: Ուստի քոչվորները բաց սահմաններից հեշտությամբ մտան ու նվաճեցին Հայաստանը, ապա 1071 թ. ջախջախեցին բյուզանդական զորքերին ու հաստատվեցին նաև Փոքր Ասիայում, ուր նրանց ժառանգորդներն ապրում են առ այսօր:*

*Սելջուկյան դաժան տիրապետության պայմաններում է՛լ ավելի զանգվածային է դառնում հայերի արտագաղթը դեպի առավել ապահով վայրեր, դեպի Միջերկրական ծովի ափերը, Բյուզանդիայի խորքերը, Վրաստան և այլուր: Նույնը, ավելի ծավալուն ու ընդգրկուն, տեղի ունեցավ մոնղոլական արշավանքների ու տիրապետության շրջանում (XIII–XIV դդ.): Հայ ժողովրդի համար ամենաահավորը թուրքմենական ակ-կոյունլու և կարա-կոյունլու ցեղերի տիրապետության ժամանակաշրջանն էր (XIV–XV դդ.): Անընդհատ կրկնվող արշավանքներն ու պատերազմները, երկրի ամայացումն ու բնակչության գերեվարումները ստիպում էին հայ քաղաքական ու հոգևոր գործիչներին ելք փնտրել դուրս գալու ստեղծված սարսափելի իրավիճակից: Ահա այս պայմաններում էլ դրսևորվում են հայ ազատագրական շարժման անդրանիկ ձգտումները:*

*Ազատագրական շարժման առաջին գործիչները լավ էին հասկանում, որ երկրից հայերի հեռանալն ու ցրվելը տարբեր գաղթավայրերում, տարբեր քաղաքական միջավայրերում հարցը չէր լուծում: Հայաստանը մնում էր գերված, իսկ գաղթահայերն էլ ժամանակի ընթացքում ձուլվում էին ու անէանում այլ ժողովուրդների մեջ: Տրամաբանական ու միակ ելքը մնում էր Հայաստանի անկախության վերականգնումը: Թե ինչպե՞ս և*

*ի՞նչ ուժերով՝ հարցերը մնում էին առկախ: Հայաստանի անկախության վերականգնման գաղափարը աստիճանաբար դառնում էր հասարակական բոլոր խավերին հուզող և հետաքրքրող հարց: Ճիշտ է՝ ազատագրական ուժերը սակավաթիվ էին ու ցրված, չկար որևէ կենտրոն, բայց կար ամենահիմնականը՝ գաղափարը, որը և հայ ազատագրական միտքը, վաղ թե ուշ, դնելու էր գործնական հողի վրա:*

*Հայ հոգևոր միջավայրը ստեղծված վիճակը փորձում էր բացատրել հայերի գործած զանազան ու բազում մեղքերով, աստվածային բարկությամբ. քոչվոր ցեղերի արշավանքներն ու տիրապետությունը Հայաստանում, հայերի ցրվելն աշխարհով մեկ հետևանք էր համարվում երկնային պատժի, քանզի յուրաքանչյուր ոք, յուրաքանչյուր ժողովուրդ պետք է պատասխան տա իր արարքների համար: Եվ այժմ եկել էր ժամանակը, որպեսզի հայերը ապաշխարեին իրենց գործած մեղքերի համար: Ահա եկեղեցական այս միջավայրում է ծնվում ազատագրական մտքի յուրօրինակ արտահայտություններից մեկը՝ հայ ազատագրական լեգենդը:*

*Այդ լեգենդի առաջին դրսևորումները վերագրվում են Հայոց կաթողիկոս Ներսես Ա Մեծին (353-373), որն իրր մահվան մահճում գուշակել էր ոչ միայն հայկական պետականության կործանումը, այլև Հայաստանում օտար ամենազաժան տիրապետությունների հաստատումը և հայերի աշխարհով մեկ ցրվելը: Տեսիլի համաձայն Հայաստանը կարող էր ազատագրվել միայն երկար տարիներ անց, բայց առանց արտաքին քրիստոնյա հզոր պետության օգնության, սեփական ուժերով դա հնարավոր չէր: Միջին դարերում ազատագրական լեգենդը մերթընդմերթ մտնում էր շրջանառության մեջ, բայց առավել տարածում գտավ սելջուկյան արշավանքների ժամանակ (XI դարի կեսեր): Հենց այս շրջանում է, որ նորից արծարծվեց հայերի «մեղավոր» ժողովուրդ լինելու պարագան: Ժողովուրդը պատժվում էր (Բագրատունյաց թագավորության կործանում, բյուզանդական և սելջուկյան տիրապետություններ, գերեվարում, երկրի տնտեսական քայքայում, արտագաղթ և այլն) իր գործած մեղքերի համար (Արիստակես Լաստիվերցի և ուրիշներ): «Մեղավոր» լի-*

*նելու գիտակցությունը, բնականաբար, ծնում էր սեփական ուժերի նկատմամբ անվստահության բարդույթ: Այստեղից էլ ծագում էր, ինչպես հուշում էր հնամենի լեգենդը, աստվածային կամեցողությամբ որևէ արտաքին քրիստոնյա հզոր ազգի օգնությամբ ազատագրվելու համոզումը:*

*Խաչակիրների առաջին երևալն Արևելքում (1096, 1147) նոր ուժով բորբոքեց ու խմրագրեց տեսիլները, գուշակություններն ու մարգարեություններն այն մասին, թե շուտով գալու է Արևմուտքի քրիստոնյա մի հզոր թագավոր և փրկելու է հայ ժողովրդին, վերականգնելու է հայկական թագավորությունը: Թվում էր, թե այդ ժամանակներն արդեն եկել էին: Հայերը խաչակիրներին դիտում էին ու աջակցում որպես իրենց ազատարարների: Սակայն հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ խաչակիրներին չէր վերապահված Հայաստանի փրկչի դերը: Դեռ ավելին, որոշ հայ իշխաններ (Մլեհ, Լևոն II) ստիպված էին անգամ մարտնչել նրանց դեմ, քանզի խաչակիրները՝ անգիտակից իրենց վերապահված «մեսիայի» դերին, հաճախ հայերի նկատմամբ ավելի դաժան էին վերաբերվում, քան մահմեդականները:*

*Ազատագրական լեգենդը տարբեր պատմաշրջաններում՝ կախված քաղաքական իրադրությունից, տարբեր «փրկիչներ» է մատնանշել, ազատագրական առաքելությունը վերագրել տարբեր հասցեատերերի: Հայերի համար ազատարար Արևմուտքը սկզբում Բյուզանդիան էր (նշվում էին որպես հոռոմեցիներ): Կ. Պոլսի անկումից հետո (1453) ազատարար Արևմուտքը տեղափոխվեց էլ ավելի արևմուտք՝ դեպի Հռոմ, դեպի ֆրանկների աշխարհը: Ազատագրական առաքելությունը հերթականությամբ վերապահվում էր մե՛րթ Հռոմի պապին ու Վենետիկի դոժին, մե՛րթ Բուրբոններին, Հաբսբուրգներին ու գերմանական տարբեր մեծ իշխաններին և ի վերջո՝ ռուսաց ցարին:*

*Հայ ազատագրական շարժման կարևորագույն առանձնահատկությունը հենց սկզբից նրա երկփեղկվածությունն էր: Հայաստանը գտնվում էր երկու և երբեմն ավելի տիրապետությունների ներքո, ուստի հայ ազատագրական միտքը ի վիճակի չէր մշակելու միասնական ազգային-ազատագրական գաղա-*

*փարախոսություն:*

*Արևմտահայ և արևելահայ ազատագրական շարժումները փոխկապակցված չէին: Տարբեր էին Պարսկաստանի և Թուրքիայի քաղաքական պայմանները, տարբեր՝ դաշնակիցները, հետևաբար տարբեր էին արևելահայ ու արևմտահայ ազատագրական շարժումների մեթոդներն ու հեռանկարները, քաղաքական-ռազմական հավանական գործընկերները: Արևելահայ գործիչները հայ ժողովրդի ազատարարի դերը երբեմն հատկացնում էին մի այնպիսի ուժի, որը կա՛մ Թուրքիայի դաշնակիցն էր, կա՛մ անտարբեր էր վերջինիս նկատմամբ: Լինում էր և հակառակը: Նման պայմանները պարտադրում էին հայերին լինել ավելի ճկուն, իրատես, գործել խիստ զգույշ:*

*Հայ ազատագրական շարժման գլխավոր առանձնահատկություններից էին կողմնորոշման հիմնահարցի անընդհատ փոփոխությունները, խմբագրումները, նոր հասցեատիրոջ երկարուձիգ որոնումները:*

*Մյուս առանձնահատկությունը դավանափոխության խնդիրն էր: Կաթոլիկ Արևմուտքը, օգտագործելով հայերի ազերսագիր-դիմումագրերը, անմիջապես առաջ էր քաշում դավանափոխ լինելու նախապայմանը: Չցանկանալով խոչընդոտել ազատագրական շարժման գործընթացը և բարդացնել հայ-արևմտաեվրոպական փոխհարաբերությունները՝ հանուն գերխնդրի, հայկական կողմը հանդես էր գալիս դավանական ինչ-ինչ զիջումներ կատարելու պատրաստակամությամբ: Մանավանդ երբեմն-երբեմն շրջանառության մեջ էր դրվում մեկ ուրիշ մտացածին փաստաթուղթ՝ այսպես կոչված «Դաշանց թուղթը», ըստ որի իբր քրիստոնյա Արևմուտքը հանձինս Հռոմի Կոստանդինոս Մեծ կայսեր (IV դար) իր վրա պատասխանատվություն էր վերցրել օգնել քրիստոնյա Հայաստանին: Կոստանդինոսը իբր Հայոց Տրդատ III թագավորի հետ կնքել է հատուկ պայմանագիր՝ «Դաշանց թուղթ» և հավաստել իր և իր բոլոր հաջորդների հավատարմությունը դաշինքին, Հայաստանին օգնելու պատրաստակամությունը: «Դաշանց թղթի» գաղափարները լայն տարածում ունեին Կիլիկյան Հայաստանում, մասնավորապես XIII-XIV դարերի հայ-լատինական բանակցությունների ժամա-*

*նակ: Այն շրջանառության մեջ մտավ նաև հետագայում՝ XVI-XVII դարերում, երբ հայ ազատագրական շարժման գործիչներն սկսեցին իրենց դեգերումներն Արևմուտքում:*

## *2. ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՓՈՐՁ XV ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՆ*

*Հայկական պետականության անկումից հետո, ինչպես տեսանք, հայ ազատագրական միտքը երբեք չլքեց այն վերականգնելու գաղափարը: XIV-XV դարերում այդ մտայնությունը հանդես էր գալիս ինչպես գեղարվեստական գրականության մեջ, այնպես էլ փոքրածավալ պատմական հիշատակարաններում: Դրանց հեղինակները տարբեր առիթներով չեշտելով երկնային թագավորի՝ Հիսուս Քրիստոսի միջոցով հայոց երկրային թագավորության վերականգնման հնարավորությունը՝ միշտ վառ էին պահում ազատագրության ոգին ու ազգային ինքնագիտակցությունը:*

*Հայաստանի ազատագրության, հայկական պետականության վերականգնման գաղափարի հիմնական կրողը, բնականաբար, պետք է դառնար ազնվականությունը: Սակայն հայկական իրականությունն այդ ժամանակ չուներ ազնվականական կազմակերպված համապատասխան միջավայր: Ուստի ազատագրական գաղափարների հիմնական կրողը հենց սկզբից դարձավ Հայոց եկեղեցին, որի բարձրաստիճան սպասավորներից շատերն ազնվականական ընտանիքների շառավիղների՝ աքեմ հագած ներկայացուցիչներ էին:*

*XIV-XV դարերում հայ իշխանական բոլոր տներն իրենց քաղաքական ու տնտեսական դիրքերը զիջել էին Հայաստանում հաստատված քոչվոր ասպատակ ցեղերին: Դա հայ ազնվականության մասնատման, հողազրկման և անէացման ժամանակաշրջան էր: Այնուհանդերձ Հայաստանի տարբեր վայրերում դեռևս իրենց անմխիթար գոյությունն էին պահպանում հայ իշխանական տների որոշ շառավիղներ: Սյունիքի առանձին տարածքներ պատկանում էին Օրբելյան ընտանիքի անդամներին:*

*XV դարի կեսերին այստեղ հիշատակվում են Բիչքեն Օրբելյանն ու նրա որդի Ռուստամը: Խաչենում շարունակում էին իշխել Հասան-Ջալալյանների, Տարում՝ Դոփյանների, Արագածոտնում՝ Վաչուտյանների, իսկ Վայոց ձորում՝ Պռոշյանների սերունդները: Քիչ թե շատ քաղաքական հզորություն ունեին Մակվի (մինչև 1426 թ.) և Համշենի (մինչև 1489 թ.) հայկական իշխանությունները: Հայկական փոքրիկ իշխանություններ գոյություն ունեին նաև Զեյթունում, Շատախում, Խութում, Սասունում և էլի մի քանի վայրերում: XV դարի կեսերին առանձնակի դեր և նշանակություն ունեին հատկապես Աղթամարում և շրջակայքում ծվարած Արծրունյաց թագավորական տան ազգականները՝ Սեֆեդինյանները: Հենց Վասպուրականում է, որ, առավել քան այլուր, գուրգուրվում էին հայկական պետականության հիշատակները: Վասպուրականի ժամանակագիրները իրենց հիշատակարաններում բազմիցս դիմում էին Ամենաբարձրյալին ու խնդրում «վերանորոգել հայոց ազգի խափանված թագավորությունը»: Հայաստանի պետականության վերականգնման գաղափարը այստեղ երբեք լքված չէր: Եկեղեցական միջավայրում փայփայվում էր այն հույսը, թե աստվածային բարեխոսությամբ կամ որևէ հզոր տիրակալի միջամտությամբ ի վերջո այն կկատարվի: Եվ պատահական չէ, որ XV դարի կեսերին դարձյալ շրջանառության մեջ էր դրվում աղատագրական վաղեմի լեգենդը՝ ենթարկվելով սակայն մի կտրուկ ու զարմանալի խմբագրման: Հայկական թագավորության վերականգնումը վերապահվում էր ոչ թե Արևմուտքին՝ Հռոմի պապին, այլ արևելյան մի հզոր միապետի՝ կարա-կոյունլու թուրքմեն տիրակալ Ջհանշահին: Այս «խմբագրումը» բացատրվում էր թուրքմեն տիրակալի այն յուրահատուկ, մեղմ ու հեռատես քաղաքականությամբ, որ նա վարում էր ընդհանրապես իր հպատակ քրիստոնյաների և մասնավորապես հայերի նկատմամբ: Մյուս կողմից՝ իրադարձություններին չափազանց գործուն միջամտություն էր ցուցաբերում Աղթամարի Զաքարիա Գ կաթողիկոսը: Նա ժամանակի հայ ազատագրական շարժման գործիչներից ու գաղափարախոսներից էր, Արծրունի-Սեֆեդինյան ընտանիքի շառավիղներից՝ օժտված մտավոր բարձր կարողություններով: Զա-*

*քարիան հմուտ դիվանագետ էր, նաև զինվորական գործիչ, հայ հոգևորականության այն եզակի դեմքերից մեկը, որ սուրն ու խաչը զուգակցում էր նույն հաջողությամբ: Նա ստեղծել էր լավ զինված ու կարգապահ մի զորաջոկատ, որը պահպանում էր կաթողիկոսական աթոռն ու Արծրունյաց կալվածքները մահմեդականների անընդհատ հարձակումներից: Այդ զորաջոկատը բազմիցս տպավորիչ հաղթանակներ էր տարել ասպատակիչ քրդերի դեմ: Կաթողիկոսին անձամբ ճանաչում և հովանավորում էր Ջհանշահը, որը բազմիցս առիթներ էր ունեցել գնահատելու նրա հավատարմությունն ու հուսալիությունը:*

*Ինքը՝ Զաքարիա Գ-ն, ավելի մեծ ակնկալիքներ ուներ թուրքմեն տիրակալից. տենչում էր նրա օգնությամբ նստել Հայոց ընդհանրական կաթողիկոսի գահին: Եվ իրոք, օգտվելով շահի բարեհաճությունից՝ նրա աջակցությամբ Զաքարիան ուղղակի գրավեց Ամենայն Հայոց կաթողիկոսի գահը (1460 թ. աշուն): Կաթողիկոսական զույգ աթոռների՝ Ս. Էջմիածնի և Աղթամարի միավորման միջոցով նա ձգտում էր հայ ժողովրդի քաղաքական միասնությանը և այն միտքն էր զարգացնում, թե Վասպուրականը հայոց ոչ միայն հոգևոր, այլև քաղաքական իղձերի իրագործման կենտրոնն է, քանզի միայն այստեղ էին պահպանվել հայոց հինավուրց թագավորների չառավիղները՝ հանձինս իր տոհմակիցների: Պատահական չէ, որ Զաքարիան իրեն անվանում էր «Գագիկ մեծ թագավորի (իմա՝ Գագիկ Արծրունու) արմատից և ցեղից»:*

*Որոշ ժամանակ անց Զաքարիան փորձում է իրականություն դարձնել իր իղձերից մեկ ուրիշը: 1463–1464 թթ. նա բանակցություններ է վարում Ջհանշահի հետ՝ Վասպուրականի հայկական թագավորությունը վերականգնելու շուրջ, և անգամ նրան ներկայացնում գահի հավակնորդին, որն իր եղբորորդի Սմբատ Արծրունի-Սեֆեդինյանն էր: Բանակցությունների ժամանակ Զաքարիա Գ-ի անակնկալ մահը, սակայն, չկասեցրեց այդ ուղղությամբ տարվող կարևոր աշխատանքները: Նոր կաթողիկոս Ստեփանոս Դ Տղան հաջողությամբ շարունակեց բանակցությունները և շահից համաձայնություն ձեռք բերեց՝ Սմբատին Հայոց թագավոր օծելու վերաբերյալ: 1465 թ. սկզբներին կա-*

*Թովմա Աղթամարի Ս. Խաչ մայր եկեղեցում, Հայոց մեծամեծների և բարձրաստիճան Հոգևորականների ներկայությամբ, Հանդիսավորությամբ Սմբատ Արծրունուն օծեց Հայոց թագավոր: Ժամանակակիցները ցնծությամբ են արձանագրել այս իրողությունը. «Այնժամ պարոն Սմբատին օծեցին Հայոց թագավոր իր նախնի Գագիկի օրինակով: Եվ Թո՛ղ Փրկիչը զորացնի նրա թագավորությունը, բարձրացնի նրա աթոռը, քանզի վաղուց Հայոց ազգը թագավոր չէր տեսել»:*

*Անշուշտ, խիստ կարևորելով Հայկական պետականության վերականգնման ուղղությամբ կատարված այս փորձը և բարձր գնաՀատելով նրա Հիմնական դերակատարներին՝ պետք է նաև նշել, որ XV դարում «թագավորական տուն», «թագավոր Հայոց» Հասկացությունններն այլևս չունեին այն նշանակությունը, ինչ առաջներում: 1465 թ. իրադարձությունը ավելի շատ Հոգեբանական ու ազգային ինքնագիտակցության արժեք ուներ, քան պետական որևէ իմաստ: Նախ, Սմբատի թագավորությունը չուներ և չէր էլ կարող ունենալ որևէ ՀամաՀայկական բովանդակություն: Ճիշտ է, 1465-1471 թթ. ընթացքում Հայկական մի շարք ձեռագրերում նա Հիշատակվում է իբրև «Հայոց թագավոր», սակայն նրա թագավորության տարածքը սաՀմանափակված էր միայն Աղթամար կղզու և առափնյա որոշ տարածքով: Երկրորդ, որքան էլ թուրքմեն տիրակալները, ելնելով ինչ-ինչ նկատառումներից, բարյացակամ վերաբերմունք ունեին Հայերի որոշ քաղաքական ձգտումների նկատմամբ, բայց բնավ չաՀագրգռված չէին ընդՀանրական Հայկական թագավորության վերականգնմամբ: Իսկ տեղական, առանձին «թագավորությունների» երևան գալը չէր կարող խանգարել նրանց: Որպես «Հայոց թագավոր», Սմբատ Արծրունին մի վերջին անգամ Հիշատակվում է 1471 թ., այնուՀետև Հիշատակագիրները նրա մասին լռում են:*

*1465 թ. իրադարձությունը որոշակի Հետաքրքրություն է ներկայացնում Հայ ազատագրական մտքի պատմության տեսակետից և ցուցանիշ է այն բանի, որ Հայկական պետականության գաղափարը երբեք չի մոռացվել Հայաստանում:*

# II. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԴԵԳԵՐՈՒՄՆԵՐԸ XVI-XVII ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. Ս. ԷՋՄԻԱԾՆԻ ԵՎ ՍԵԲԱՍՏԻԱՅԻ ԳԱՂՏՆԻ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎՆԵՐԸ

*Համոզվելով, որ սեփական ուժերով հնարավոր չէ ազատագրվել օտարի տիրապետությունից՝ հայ ազատագրական գաղափարի կրողները հրավիրում էին գաղտնի ժողովներ, որոնցում քննարկման առարկա էր դառնում Հայաստանի ազատագրության խնդիրը:*

*Նման առաջին խորհրդաժողովը հրավիրվել է 1547 թ. Ս. Էջմիածնում: Նրա կազմակերպիչն ու ոգին Ամենայն Հայոց կաթողիկոս Ստեփանոս Ե Սալմաստեցին էր: Սա մտավորական անձնավորություն էր, բանաստեղծ ու երաժիշտ, ուներ խոր և բազմակողմանի գիտելիքներ, գիտեր մի քանի օտար լեզուներ, նախապես պաշտոնավարել էր Կ. Պոլսում, Լեհաստանում և Մոսկովյան Ռուսիայում, քաջածանոթ էր ժամանակի քաղաքական իրադարձություններին: Խորհրդաժողովը, որին մասնակցում էին արևելահայ բարձրաստիճան հոգևորականներ, մեծատուն առևտրականներ և մելիքներ, ընդունում է մի «Աղերսագիր» և որոշում կաթողիկոսի գլխավորությամբ պատվիրակություն առաքել Վենետիկ ու Հռոմ:*

*1548 թ. պատվիրակությունը Կ. Պոլսի վրայով ուղևորվում է Եվրոպա: Քաղաքական երկխոսության առաջին կենտրոնը Վենետիկն էր: Այստեղ պատվիրակությանը ընդունում է հանրապետության դոժը և մանրամասն ծանոթանում հայերի քաղաքական ակնկալիքներին: Պահպանված փաստաթղթերից հայտնի է դառնում, որ հայկական կողմն իր հույսը հիմնականում կապել էր Վենետիկի հետ:*

*Այնուհետև բանակցությունները շարունակվում են Հռոմում, ուր հայկական պատվիրակությունը ժամանել էր 1549 թ.*

*սկզբներին: Հուլիոս III պապի կողմից հանդիսավորությամբ ընդունված պատվիրակությունը այստեղ հանդիպում է լուրջ դժվարությունների: Վատիկանում հայ-հռոմեական բանակցությունները հիմնականում կրում էին դավանաբանական բնույթ, իսկ ազատագրական խնդիրները մղվել էին հետին դիրքեր: Քաղաքական երկխոսության փոխարեն Հռոմի կղերապետը առաջադրեց զույգ եկեղեցիների միության հին, չարչրկված հիմնահարցը: Հանուն քաղաքական ակնկալությունների՝ Հայոց կաթողիկոսը 1549 թ. օգոստոսի 2-ին ստիպված էր գրավոր հնազանդություն հայտնել Հռոմի պապին: Անշուշտ դա դիվանագիտական դիջում էր և շատ հեռու էր հայերի իրական քաղաքական նկրտումներից:*

*Բանակցությունների հաջորդ խարսխակայանները դարձան Վիեննան, ապա՝ Վարշավան, ուր Ստեփանոս Ե-ն հանդիպումներ ունեցավ Կարլոս V կայսեր և Սիգիզմունդ II թագավորի հետ: Ավարտելով դիվանագիտական բանակցություններն Արևմուտքում՝ հայկական պատվիրակությունը 1551 թ. Ռուսաստանի վրայով վերադարձավ հայրենիք:*

*Եվրոպայում Հայոց կաթողիկոսի վարած բանակցությունները որևէ շոշափելի, դրական արդյունք չտվեցին: Թուրքական ռազմակալման եզրին հայտնված Եվրոպան, որ մեծ դժվարությամբ պաշտպանական պատերազմներ էր մղում, չէր ցանկանում և չէր էլ կարող որևէ գործուն միջամտություն ունենալ հայերի քաղաքական ճակատագրում: Դավանաբանական ու կրոնական պայքարով առլեցուն եվրոպական միջավայրում Հռոմի պապերն այլևս չէին կատարում արևմտաեվրոպական ընդհանուր միապետի դերը և հետևաբար չէին կարող հակաթուրքական դրոշի ներքո համախմբել տարաբաժան ուժերը: Ուստի հայկական դիվանագիտության առաջին երկխոսությունները քաղաքական իմաստով անհեռանկար էին: Այնուամենայնիվ, Ստեփանոս Սալմաստեցու առաքելությունը ավելորդ չէր. այն օրակարգի հարց դարձրեց Հայաստանի ազատագրության խնդիրը և ուղի հարթեց հետագա քաղաքական երկխոսությունների համար:*

*Մի քանի տարի անց՝ 1562 թ. մայիսի 20-ին, Հայոց կաթո-*

*ղիկոս Միքայել Ա Սեբաստացին Սեբաստիայի Ս. Աստվածածին մայր եկեղեցում հրավիրում է գաղտնի խորհրդաժողով: Ի տարբերություն կաթողիկոս Ստեփանոս Ե Սալմաստեցու կողմից 1547 թ. էջմիածնում հրավիրված ժողովի, այս ժողովին մասնակցում էին ինչպես արևելահայ, այնպես էլ արևմտահայ գործիչներ և, որ չատ կարևոր էր, բարձրացվեց բովանդակ Հայաստանի ազատագրության հարցը: Խորհրդաժողովը որոշում ընդունեց Եվրոպա ուղարկել մի նոր պատվիրակություն, որի ղեկավար նշանակվեց Աբգար Եվդոկացին (Թոխաթեցի)՝ բանիմաց մի անձնավորություն, որ սերում էր Արծրունյաց արքայական ընտանիքից:*

*1563–1564 թթ. Աբգար Եվդոկացին բանակցություններ է վարում Վենետիկի հանրապետության դոժի՝ Հերոնիմոսի հետ: Պատահական չէ Աբգարի եվրոպական բանադնացության այս նպատակակետը, քանզի XVI դարի կեսերին Վենետիկի հանրապետության և Օսմանյան կայսրության առճակատումը հասել էր իր գագաթնակետին և բնական է, որ Վենետիկում հայերը կարող էին դիտվել որպես հակաթուրքական դաշնության հնարավոր բաբեկամներ: Այս շրջանում Վենետիկը հզորագույն ծովային տերությունն էր, որն ուներ 3300 ռազմանավ, 36 հազար ծովային հետևազոր և այլ ուժեր:*

*Հայաստանի նկատմամբ Վենետիկի հովանավորությունը ստանալու խոստումը ստանալուց հետո Աբգարը ուղևորվում է Հռոմ: 1564 թ. նոյեմբերին նա ընդունվում է Պիոս IV պապի կողմից և նրան ներկայացնում Սեբաստիայի խորհրդաժողովի ընդունած ծածկագիր փաստաթղթերը: Դիմումագրում դարձյալ չեշտվում էր այն գաղափարը, թե հայերը կընդունեն պապի գերիշխանությունը, եթե կաթոլիկ Եվրոպան իրենց օգնի ազատագրվելու իսլամի տիրապետությունից: Հատկանշական է, որ Հռոմի կղերապետը ապագա ազատագրված Հայաստանի թագը խոստանում է Աբգար Եվդոկացուն, որին ուղարկում է Հայաստան՝ հայ-հռոմեական հետագա բանակցությունների համար Հայոց կաթողիկոսին Հռոմ առաջնորդելու: 1569 թ. Աբգար Եվդոկացին մանրամասն զեկուցագիր է ներկայացնում Միքայել Սեբաստացուն՝ իր քաղաքական առաքելության վերաբերյալ:*

*Զնայած Աբգարի բանակցությունները Եվրոպայում որևէ դրական արդյունքի չհանգեցրին, բայց հայոց ազատագրության գաղափարակիրները չէին վհատվում և շարունակում էին ապավինել կաթոլիկ Արևմուտքի օգնությանը:*

*1575 թ. Հայոց կաթողիկոս Թադևոսը դարձյալ ուղևորվում է Եվրոպա և բանակցություններ վարում Հռոմի պապի, Վենետիկի դոժի և Լեհաստանի թագավորի հետ: Նույն թվականին Սսի Խաչատուր Բ Զեյթունցի կաթողիկոսը հատուկ ուղերձով դիմում է Գրիգոր XIII պապին և օգնություն հայցում նրանից: Այդպես է վարվում նաև նրա հաջորդ Ազարիա Ա Ջուղայեցի կաթողիկոսը, որը 1584 թվականին Վատիկան ուղղված դիմումնագրում չեշտում էր, թե հայերը պատրաստ են ընդունելու կաթոլիկություն, եթե նրանց ցույց տրվի ռազմաքաղաքական օգնություն ընդդեմ թուրքերի: Հայաստանը համեմատելով անպարիսպ այգու հետ՝ կաթողիկոսը հույս էր հայտնում, թե միայն Հռոմի օգնությամբ հնարավոր կլինի պարսպապատել Հայաստանր և ազատագրել անօրենների տիրապետությունից:*

*Հնազանդության վերը նշված հինգ ազերսագրերը ցույց են տալիս, որ հայոց ազատագրությանը նախանձախնդիր հայ եկեղեցական գործիչները չրջանառության մեջ դնելով «Դաշանց թղթի» գաղափարները՝ ջանում էին ապահովել Արևմուտքի չստանձնած, չեղած, դոյություն չունեցող պարտականությունները Հայաստանի նկատմամբ: Արևմուտքն ի վիճակի չէր վեր կանգնելու դավանաբանական խճողված վեճերից և վարելու քաղաքական իրատես բանակցություններ: Իր հերթին, հայ ազատագրական միտքը չուներ Հայաստանի ազատագրության մշակված իրատես ծրագիր: Հույսը դնելով միայն արտաքին օգնության վրա՝ Հայաստանի ազատագրությունը երազող չարժման գործիչները հստակ պատկերացում չունեին անգամ իրենց անելիքների և ընդհանրապես այդ գործում հայերի դերի մասին:*

## 2. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ XVII ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՆ

*Անարդյունք բանակցությունները կաթոլիկ Արևմուտքի հետ ուժամանակ կասեցրին հայ ազատագրական որոնումները: Պարսկա-օսմանյան ավերիչ պատերազմները, որ ընդգրկեցին ամբողջ XVI հարյուրամյակը և XVII դարի առաջին կեսը, նույնպես որևէ հույս չէին թողնում, թե այդ պայմաններում հնարավոր է կազմակերպել ազատագրական որևէ շարժում: Եվ միայն XVII դ. 40-ական թվականների կեսերին դարձյալ օրակարգ մտցվեց Հայաստանի ազատագրության հարցը: Այժմ հայ ազատագրական դեղերումները խթանեցին Կանդիայի (Կրետեի) պատերազմի (1645-1669) հետևանքով առաջացած քաղաքական ականկալությունները: Միջազգային կյանքի այս նշանակալի իրադարձությունն էր, որ առաջ քաշեց Օսմանյան Թուրքիայի դեմ ձեռնարկվելիք համաքրիստոնեական խաչակրաց արշավանքի գաղափարը: Ուստի պատահական չէ, որ Հռոմի կղերապետությունը, Վենետիկի հանրապետությունն ու Ֆրանսիան բազմիցս դիմումներ էին հղում Արևելքի քրիստոնյա եկեղեցիների ղեկավարներին՝ օսմանյան տիրապետության դեմ համատեղ պայքարի ելնելու առաջարկներով, որպես հատուցում խոստանալով պարտված Թուրքիայի ավերակներում կերտել ազգային անկախ քրիստոնեական պետություններ:*

*Պատերազմի հենց առաջին տարիներին Վենետիկի և Վատիկանի գործակալները քաղաքական գաղտնի բանակցություններ սկսեցին Անտիոքի հունաց պատրիարքի, ասորաց կաթողիկոսի և Սսի հայոց կաթողիկոս Խաչատուր Գ Գաղատացու հետ: Այս առումով չափազանց գործուն դեր է խաղում Հալեպի ֆրանսիական հյուպատոս Ֆրանսուա Բարոնը, որը հայերին խորհուրդ էր տալիս ակտիվ համագործակցել Արևելքի քրիստոնեական մյուս ժողովուրդների հետ: Իր հերթին Խաչատուր Գաղատացին օգնության դիմումնագրեր է հղում Հռոմի Ալեքսանդր VII պապին, Վենետիկի դոժին, Ֆրանսիայի թագավորին: Հետաքրքիր է, որ 1657 թ. վերջերին Խաչատուր Գաղատացին այցելում է Կանդիա և բանակցություններ վարում Վենետիկի*

*բանակի գլխավոր հրամանատար Ֆրանչեսկո Մարոզինիի հետ: Բանակցությունները շարունակվում են նաև հետագայում՝ 1668 թվականին: Ենթադրելի է, որ քաղաքական այս երկխոսություն-ների հիմնական նյութը պետք է լիներ Հայաստանի ազատա-գրության հարցը:*

*Ի տարբերություն XVI դարի, հայ ազատագրական միտքը այժմ որդեգրում է նոր կողմնորոշում: Ազատագրական շարժման գործիչներն իրենց հույսը կապում են Ֆրանսիայի և հատկապես նրա «Արև-արքայի»՝ Լյուդովիկոս XIV-ի հետ: Հատկանշական է, որ Սսի կաթողիկոս Խաչատուր Գաղատացու՝ Ֆրանսիայի թագավորին ուղղված 1663 թ. փետրվարի 12-ի դիմումնագիրը հենց այդպես էլ հավաստում էր, թե «հայերը հույս և հավատ ունեն, որ Ձեր օրհնյալ ձեռքերով պիտի կատարվի իրենց փրկու-թյունը»: Ազատագրական շարժման այս նոր շրջադարձը պայ-մանավորված էր նախ՝ միջազգային կյանքում Ֆրանսիայի անբեկանելի կշռով և ապա՝ Արևելքում նրա վարած չափազանց գործուն հակաթուրքական քաղաքականությամբ:*

*Փոփոխություն է տեղի ունենում նաև ազատագրական շարժման սոցիալական միջավայրում: Թեև եկեղեցին շարունա-կում էր վճռորոշ դեր խաղալ ազատագրական շարժման գաղա-փարախոսության մշակման բնագավառում, սակայն պայքարի գործնական կազմակերպմանը ձեռնամուխ է լինում նաև հայ առևտրական դասը, որն այդ շրջանում արդեն կարևոր դեր էր խաղում հասարակական կյանքում:*

*Հայ առևտրական բուրժուազիան (առավել հայտնի է խո-ջայություն անունով), որը առևտրատնտեսական շահախնդրու-թյուններով կապված էր Արևելքում լայն տարածում ունեցող ֆրանսիական կապիտալի հետ, իր երևելի ներկայացուցիչներից մեկին՝ Մուրադ (Շահմուրատ) Բաղիշեցուն 1666 թ. ուղարկում է Ֆրանսիա: Փարիզում Մուրադ Բաղիշեցին մի քանի անգամ այցելում է Լյուդովիկոս XIV-ին, բանակցում նրա և ազդեցիկ նախարար Ժ. Բ. Կոլբերի հետ: Մուրադ Բաղիշեցին առաջինն էր, որ փորձեց մշակել Հայաստանի ազատագրության ծրագիր, որի համաձայն Օսմանյան կայսրության բոլոր քրիստոնյա ժողո-վուրդները պետք է համատեղ ապստամբություն բարձրացնեն*

*տիրապետող վարչակարգի դեմ և տապալելով այն՝ վերականգնեն ինչպես Բյուզանդական կայսրությունը, այնպես էլ Հայկական թագավորությունը: Այս ծրագրի հիմնական նախապայմանը պետք է լիներ Ֆրանսիայի մասնակցությունը պատերազմին: Հայերը ֆրանսիական կողմնորոշումից չհրաժարվեցին անգամ Կրետեի պատերազմում Վենետիկի կրած ծանր պարտությունից հետո: Մուրադ Բաղիշեցին շարունակում է բանակցությունները Վերսալի արքունիքի հետ: 1672 թ. նա հատուկ ուղերձով դիմում է Լյուդովիկոս XIV-ին և նրան ներկայացնում հայերի ազատագրական ակնկալիքները: Մուրադ Բաղիշեցին Ֆրանսիայի թագավորին հավաստիացնում է, թե Արևելքի «Քրիստոնյա ժողովուրդներն այլևս չկարողանալով տանել Թուրքիայի տիրապետությունը՝ պատրաստ են ապստամբելու: Այդ բոլոր ժողովուրդներն էլ համոզված են, որ Ձերդ վեհափառությունը չի հապաղի ձեռնարկելու ազատագրական արշավանք, որին երկար ժամանակ մենք սպասում ենք, որպեսզի զենքը ձեռքներիս ապստամբենք՝ հենց որ քրիստոնեության զորքերը երևան Ձերդ վեհափառության առաջնորդությամբ»: Հատկանշական է, որ նույն ժամանակ (1670 թ.) ֆրանսիական գործակալ դը Լա Գուզը Երևանից Լյուդովիկոս XIV-ին գրում է. «Հայերն իրենց ազատագրությունն ակնկալում են Ձերդ վեհափառության հաղթական զենքից, և գիտակ լինելով Ձերդ մեծությանն ու հզորությանը՝ ...Ձերդ վեհափառության մասին խոսում են միմիայն որպես իրենց ազատությունը վերականգնողի»:*

*Մի վերջին անգամ Լյուդովիկոս XIV-ի հետ բանակցություններ է վարում 1680 թ. Փարիզ ժամանած Կ. Պոլսի նախկին պատրիարք Հովհաննես Թութունջին, որը նախապես եղել էր Եթովպիայում և փորձել այդ երկիրը ևս ներգրավել հակաթուրքական պայքարի մեջ: 1683 թ. նա, Մուրադ Բաղիշեցու և Զաքարիա Սիսիանցու հետ, Սենկլուի արքայական պալատում բանակցում է Ֆրանսիայի թագավորի հետ: Հայ-ֆրանսիական բանակցությունները շուտով ընդհատվում են, քանզի Ֆրանսիան պատերազմ սկսելով Աուգսբուրգյան լիգայի դեմ՝ ոչ միայն հրաժարվել էր Օսմանյան կայսրության դեմ խաչակրաց արշավանք ձեռնարկելու գաղափարից, այլև իր վրա էր վերցրել Ավստրիա-*

*յից և գերմանական այլ տերություններից Թուրքիային պաշտպանելու պարտականությունը: Այս հանգամանքը հայ ազատագրական շարժման գործիչներին ստիպեց հերթական անգամ փոխելու քաղաքական կողմնորոշումը:*

## 3. Ս. ԷՋՄԻԱԾՆԻ 1677 ԹՎԱԿԱՆԻ ԳԱՂՏՆԻ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԸ

*Հայ ազատագրական շարժման արևմտաեվրոպական դեգերումների հերթական դրվագն աղերսվում է Ամենայն Հայոց կաթողիկոս Հակոբ Դ Ջուղայեցու անվան հետ: Ջուղայեցին ժամանակի ամենակրթված ու եռանդուն հայ եկեղեցականներից էր: Նա հատկապես նշանավոր էր որպես Հայաստանում և հայկական գաղթավայրերում կաթոլիկ քարոզիչների դեմ հակագործունեություն ծավալած գործիչ: Նախանձախնդիր էր Ամենայն Հայոց կաթողիկոսության գիրքն ու հեղինակությունը բարձրացնելուն: Հայկական գրատպության գործը խթանելու նպատակով նա Եվրոպա է ուղարկում Ոսկան Երևանցուն, Մատթեոս Վանանդեցուն և ուրիշների, որոնք նաև հանձնարարականներ ունեին այնտեղ նպաստավոր կարծիք ստեղծելու Հայաստանի ազատագրության հարցի շուրջ և միաժամանակ հող նախապատրաստելու հայ-արևմտաեվրոպական քաղաքական ու դավանաբանական բանակցությունների համար: Այդ դիտավորությամբ Ջուղայեցին նամակագրական կապ է հաստատում Ալեքսանդր VII պապի, Ավստրիայի կայսր Լեոպոլդ I-ի և այլոց հետ: 1662 թ. կաթողիկոսը Վենետիկ և Հռոմ է ուղարկում Առաքել Բոկոտն (Բոպիկ) վարդապետին, որը բանակցություններ է վարում պապական շրջանակների հետ:*

*Ս. Էջմիածնում Հայաստանի ազատագրության ամբողջ հույսն արդեն դնում էին Հաբսբուրգների տան վրա: Կրետեի անհաջող պատերազմից հետո հակաթուրքական պայքարի ղեկն իր ձեռքն էր վերցրել Ավստրիան, որը դաշնակցած Ռեչ-Պոսպոլիտայի, Վենետիկի, Ռուսաստանի և գերմանական մի քանի իշխանությունների հետ դիմագրավում էր Եվրոպայի կենտրոնում*

*հայտնված թուրքական զորաբանակներին: Լեոպոլդ I-ին ուղարկված խնդրագրում կաթողիկոսը հավաստիացնում էր, թե հայերն իրենց ազատագրական հույսերը միշտ էլ կապել են Հաբսբուրգների տան հետ: Միաժամանակ կաթողիկոսը վստահեցնում էր, թե հայկական կողմը պատրաստ է դավանաբանական ինչ-ինչ զիջումներ կատարել կաթոլիկ եկեղեցուն: Հասկանալի է, որ այդ հավաստիացումները դիվանագիտական քայլեր էին և չէին արտահայտում իրերի բնական ընթացքը:*

*Ահա այսպիսի պայմաններում 1677 թ. Ս. Էջմիածնում Հակոբ Դ-ն հրավիրում է գաղտնի ժողով, որին մասնակցում էին ինչպես Արցախի և Սյունիքի մելիքների ներկայացուցիչները, այնպես էլ բարձրաստիճան հոգևորականներ, մեծատուններ՝ թվով 12 մարդ: Քննարկման ներկայացված հիմնական հարցերը Հայաստանի ազատագրության, հայ և կաթոլիկ եկեղեցիների փոխհարաբերություններն էին: Ժողովը որոշում է օգնության խնդրանքով դիմել Հռոմի պապին և հնազանդություն հայտնելով՝ նրա միջնորդությամբ բանակցություններ վարել Արևմուտքի հզոր տերությունների հետ:*

*Նորությունն այն էր, որ հատուկ քննարկվում է նաև Վրաստանի հետ համագործակցության հարցը: Այդ նպատակով ժողովի կողմից ընտրված պատվիրակությունը, որ գլխավորում էր հայոց կաթողիկոսը, 1677 թ. հունիսին անցնում է Վրաստան և բանակցություններ վարում Քարթլիի թագավոր Գեորգի XI-ի հետ: Այստեղ մշակվում է հայ-վրացական համատեղ պայքարի ծրագիր, որի համաձայն հայերը պետք է դիմեին Արևմուտքի, իսկ վրացիները՝ Ռուսաստանի օգնությանը: Նշելի է, որ Հակոբ Դ-ն, չնայած այդ պատվիրակությանը, հատուկ ուղերձ է հղել Ռուսաստանի ցար Ալեքսեյ Միխայլովիչին և հայ ազատագրական շարժման պատմության մեջ առաջին անգամ օգնություն ակնկալել Ռուսաստանից: 1678 թ. դեկտեմբերին հայկական պատվիրակությունը ժամանում է Կ. Պոլիս, ուր կաթողիկոսը հանդիպումներ է ունենում արևմտահայ նշանավոր հասարակական գործիչների, Երուսաղեմի հայոց պատրիարք Եղիազար Այնթափցու և այլոց հետ: Վատիկանի հետ ապագա բանակցությունները նախապատրաստելու համար կաթողիկոսը պատվի-*

*րակության անդամներից մեկին՝ Առաքել Բոկոտն վարդապետին, 1679 թ. ուղարկում է Հռոմ, իսկ ինքը, հայ նշանավոր մտավորական Երեմիա Քյոմուրճյանի խորհրդով, թղթակցում է Ռեչ-Պոսպոլիտայի թագավոր Յան Սոբեսկու հետ: Վերջինս, որ Եվրոպայի հեղինակավոր միապետներից էր, հայկական որոշ շրջանակներում դիտվում էր որպես Հայաստանի ազատագրումը սատարող ամենահավանական եվրոպական քաղաքական գործիչներից մեկը: Հետաքրքիր է, որ ինքը՝ Սոբեսկին, կաթողիկոսին ուղղած պատասխան նամակում որոշակի օգնություն էր խոստանում՝ վերականգնելու Հայաստանի քաղաքական անկախությունը: Բայց պատվիրակության գործունեությունն անսպասելիորեն ընդհատվեց, որովհետև 1680 թ. օգոստոսի 1-ին Հակոբ Դ-ն հանկարծամահ եղավ: Պատվիրակության մյուս անդամները ստիպված էին վերադառնալ Հայաստան: Հայ-արևմտաեվրոպական բանակցություններն առժամանակ հետաձգվեցին:*

# III. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ XVIII ԴԱՐՈՒՄ

## 1. ԻՍՐԱՅԵԼ ՕՐԻՆ ԵՎ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

***ա. Իսրայել Օրին Եվրոպայում:*** *XVII դարի վերջերին և XVIII դարի սկզբներին հայ ազատագրական շարժումը թևակոխում է իր զարգացման նոր, ավելի կազմակերպված փուլը: Ազատագրական շարժման նախադեպը չունեցող այս պատմաշրջանը անխզելիորեն կապված է Իսրայել Օրու անվան հետ:*

*Իսրայել Օրին որդին էր Սիսիանի մելիք Իսրայելի, որը Ս. Էջմիածնի 1677 թ. գաղտնի ժողովի կողմից ընտրված պատվիրակության անդամներից մեկն էր: Մելիք Իսրայելը չափազանց մեծ համարում ուներ հայ քաղաքական շրջանակներում, իսկ նրա ընտանիքը համակնում էր Պռոշյան նշանավոր իշխանական տոհմից սերված լինելուն: Եվրոպա ուղևորվող մելիք Իսրայելը իր հետ էր վերցրել 17-ամյա որդուն՝ Օրուն, որպեսզի նրան այնտեղ կրթություն տալու նպատակով: Իհարկե, պատանի Օրին չէր կարող լինել գաղտնի ժողովի մասնակից, հետևաբար և պատվիրակության անդամ, թեև, ինչպես ցույց տվեցին հետագա իրադարձությունները, նա ժողովի և պատվիրակության մասին քաջատեղյակ էր: Հակոբ Դ-ի մահից հետո մելիք Իսրայելը ծանոթ վաճառականներից մեկին խնդրում է որդուն ուղեկցել Եվրոպա, իսկ ինքը վերադառնում է Հայաստան: 1680 թ. վերջերին Օրին հաստատվում է Վենետիկում:*

*Օրու եվրոպական գործունեությունը լի է անորոշությամբ ու գաղտնիքներով: Միայն հայտնի է, որ երիտասարդ ազնվականն իր ուժերը նախ փորձել է առևտրի բնագավառում՝ սկզբում Վենետիկում (1680-1683), ապա՝ Փարիզում: Այստեղ էլ յուրացրել է ֆրանսիական նիստուկացը, լեզուն, կենցաղը, ձեռք բերել քաղաքական ու ռազմական որոշակի գիտելիքներ: Բացի ֆրանսերենից ազատորեն տիրապետում էր իտալերեն, լատիներեն և գերմաներեն լեզուներին: Այնուհետև եղել է ֆրանսիա-*

*կան բանակի զինվորական մատակարար և տարիներ շարունակ առիթներ ունեցել սերտ աղերսներ ունենալ ռազմական ու պետական մարմինների հետ: Հայտնի է, որ Հայաստանի ազատագրության հարցի շուրջ անգամ դիմումնագրեր է հղել Լյուդովիկոս XIV-ին, սակայն դրանք ուշադրության չեն արժանացել: Որոշ ժամանակ անց, հրաժարվելով առևտրական գործունեությունից, Օրին ծառայել է ֆրանսիական բանակում՝ նախ՝ հետևակի լեյտենանտի, ապա՝ հեծելազորի կապիտանի զինվորական աստիճաններով, մասնակցել անգլիացիների դեմ ֆրանսիական բանակի ռազմական վեց արշավանքներին, աչքի ընկել անձնական խիզախությամբ և քաջագործություններով:*

*Անգլո-ֆրանսիական հերթական պատերազմի ժամանակ՝ 1695 թ., Օրին Նամյուր քաղաքի մոտ գերի է ընկել անգլիացիների ձեռքը: Հենց նույն թվականին էլ, խաղաղության պայմանագրի ստորագրումից հետո, ազատվել է գերությունից, բայց Ֆրանսիա վերադառնալու փոխարեն տեղափոխվել է Գերմանիայի Հռենոսյան Պֆալց, հաստատվել Դյուսելդորֆ քաղաքում և ծառայության անցել տեղի կայսրընտիր (կուրֆյուրստ) մեծ իշխան Հովհան Վիլհելմի մոտ՝ նշանակվելով Հայդելբերգ և Մանհայմ քաղաքների մատակարարման կոմիսար: 1698 թ. Օրին անձամբ հանդիպում է մեծ իշխանին և նրան ներկայացնում Հայաստանի ազատագրության խնդիրը:*

*Հովհան Վիլհելմը տարածաշրջանի ամենանշանավոր քաղաքական գործիչներից էր, արյունակցական ու քաղաքական մերձավոր սերտ հարաբերություններ ուներ եվրոպական բազմաթիվ տիրակալների, առավելապես՝ Ավստրիայի Լեոպոլդ I կայսեր և Տոսկանայի մեծ դուքս Կոզմաս III Մեդիչիի հետ: Նշելի է, որ 1683 թ. Ավստրիան «Սրբազան լիգայի» մյուս երկրների հետ պատերազմի մեջ էր ընդդեմ Թուրքիայի, իսկ Հովհան Վիլհելմը ոչ երկրորդական դեր էր խաղում այդ իրադարձություններում. նա հակաթուրքական այդ լիգայի կազմակերպիչներից ու ոգեշնչողներից մեկն էր: Ուստի պատահական չէր Օրու ոչ միայն Հովհան Վիլհելմի հետ բանակցություններ վարելը, այլ ընդհանրապես Պֆալցում հայտնվելը:*

*Այդ ժամանակաշրջանի եվրոպական քաղաքական թատե-*

*րաքեմում Ավստրիայի վճռորոշ դերն էր ստիպել հայ գործչին ուղիներ փնտրել՝ մերձենալու Հաբսբուրգների ազդեցիկ տան հետ, իսկ ուղիներից մեկն անցնում էր Պֆալցով: Դրանով Օրին հայերի վաղեմի ակնկալություններն ու կողմնորոշումը Բուրբոններից նպատակաուղղում է դեպի Հաբսբուրգները և նրանց հետ կապված քաղաքական շրջանակները: Օրին Հովհան Վիլհելմին ծանոթացնում է Հայաստանի վիճակի, 1677 թ. էջմիածնի ժողովի մանրամասների և Հակոբ Դ-ի առաքելության հետ: Նա ջանք և եռանդ չէր խնայում շահագրգռելու մեծ իշխանին՝ հանձն առնելու Հայաստանի ազատագրության գործը, որը, նրա համոզմամբ, ներկա քաղաքական իրավիճակում բարդություն չէր ներկայացնում, մանավանդ որ հայերը պատրաստ էին ապստամբելու, և անհրաժեշտ էր միայն բարեկամ որևէ հզոր պետության աջակցությունը: Հայաստանի ազատագրության դեպքում, ի նշան երախտագիտության, հայերը հանձն էին առնելու ոչ միայն Հովհան Վիլհելմին ճանաչել իրենց թագավոր, այլև ընդունելու կաթոլիկական դավանանքը: Թուրքական ճակատներում ավստրիական բանակների հաղթանակներն էլ ավելի էին ամրապնդում այդ համոզումը, և Հովհան Վիլհելմի՝ Հայաստանն ազատագրողի դերը դառնում էր ոչ երևութական, իսկ Հայաստանի գահը՝ իրականին մոտ:*

*Պետք է նշել, որ Հովհան Վիլհելմին, ինչպես և եվրոպական շահագրգիռ տերություններին, խիստ հետաքրքրեց Թուրքիայի թիկունքում անկախ հայկական պետություն ստեղծելու գաղափարը: Ահա թե ինչու սկսված բանակցությունները գործնական հողի վրա դնելու, հայ քաղաքական և հոգևոր պետերի հետ անմիջական կապեր հաստատելու, Հայաստանի վերաբերյալ տնտեսական, քաղաքական ու ռազմական մանրամասն տեղեկություններ ստանալու համար անհրաժեշտ էր, որ Օրին մեկներ Հայաստան և այնտեղից բերեր համապատասխան պաշտոնական դիմումնագրեր ու երաշխավորագրեր: 1699 թվականի սկզբներին Օրին մեկնեց Հայաստան՝ իր հետ ունենալով մեծ իշխանի համապատասխան գրություններ՝ ուղղված էջմիածնի և Գանձասարի կաթողիկոսներին, հայոց մելիքներին ու վրաց Գեորգի XI թագավորին:*

*բ. Անգեղակոթի գաղտնի ժողովը: XVII դարի վերջերին Արևելյան Հայաստանի կացությունը մնում էր ահավոր, էլ ավելի էր ծանրացել ժողովրդի տնտեսական վիճակը: Պարսիկների հարկային, ազգային ու կրոնական քաղաքականությունը դարձել էր սանձարձակ և մեծ չարիքներ էր պատճառում ժողովրդին: Համապատասխանաբար թուլացել էր նաև հայ ազատագրական շարժման ոգորումները: Ամենայն Հայոց կաթողիկոս Նահապետ Ա Եդեսացին չէր խրախուսում ազատագրական որևէ աննշան ճիգ և օրնիբուն զբաղված էր անզուսպ շահատակություններով: Նույնպիսի դիրք էր գրավել նաև Գանձասարի Սիմեոն կաթողիկոսը: Իսկ վրաց Գեորգի XI թագավորը, որը կուրֆյուրստի ուղերձում հորջորջվում էր որպես «Մեծ Հայաստանի առաջին տեր, իշխան ու առաջնորդ», վաղուց լքել էր ազատագրական շարժման դիրքերը և մահմեդականություն ընդունելով՝ դեգերում էր Պարսկաստանում:*

*Ահա 20-ամյա տարագրությունից հետո նման միջավայրում էր հայտնվել Իսրայել Օրին, երբ 1699 թ. գարնանը Կ. Պոլսի և Կարինի վրայով հասել էր Էջմիածին: Այստեղ Մայր աթոռի կողմից նա հանդիպեց անբարյացակամ, անգամ թշնամական վերաբերմունքի և ստիպված շուտափույթ լքեց Էջմիածինն ու մեկնեց Սյունիք:*

*Այդ ժամանակ Սյունիքում և Արցախում խմորվող ազատագրական ձգտումները գլխավորում էին հին ազնվատոհմ իշխանական ընտանիքների շառավիղները՝ մելիքները: Եկեղեցական և առևտրական հասարակախավերից հետո մելիքությունը դառնում էր հայ ազատագրական շարժումը կազմակերպող երրորդ ուժը, որը հատկապես զգացնել տվեց Անգեղակոթի գաղտնի ժողովում:*

*Հայ մելիքների այդ ժողովը հրավիրվել է 1699 թ. ապրիլի 9-ին՝ Անգեղակոթի մելիք Սափրազի ապարանքում: Ժողովին մասնակցել են Սյունիքի և Արցախի մելիքներ և հոգևորականության որոշ ներկայացուցիչներ: Այստեղ շուրջ քսան օր բուռն քննարկման առարկա դարձավ Արևելյան Հայաստանը պարսկական տիրապետությունից ազատագրելու հարցը: Դարձյալ տիրապետող էր այն միտումը, թե հայերը միայն սեփական*

*ուժերով անկարող են իրականացնել պատմական այդ գերխնդի-րը, ուստի պետք է ապավինել Հռոմի պապի միջամտությանն ու Արևմուտքի որևէ հզոր թագավորից օգնությանը: Տվյալ պահին մելիքների խորհրդածողովը օգնություն էր հայցում Ավստրիայի կայսր Լեոպոլդ I-ից, Տոսկանայի մեծ դուքս Կոզմաս III-ից և Պֆալցի մեծ իշխան Հովհան Վիլհելմից: Ինչպես և սպասվում էր, առանձին դիմումներ են հղվել Հռոմի Ինոկենտիոս XII պապին՝ անշուշտ դավանական հնազանդության հավաստիացմամբ: Կարևոր էր հատկապես Հովհան Վիլհելմին հասցեագրված դիմումը, որով մելիքները միակամ հավաստում էին Հայաստանի թագը նրան շնորհելու իրենց որոշումը և թախանձագին խնդրանքը՝ արագացնել գերմանական զորքերի առաքումը Հայաստան:*

*Կուրֆյուրստին հղված դիմումնագրում հայոց մելիքները հստակորեն մատնանշում էին հակապարսկական ապագա ռազմական գործողություններում իրենց անելիքներն ու դերը: Նրանք հավաստում էին, որ մինչև եվրոպական զորքերի ժամանելը Հայաստան հայերը ստեղծելու են ռազմական ջոկատներ և նախապատրաստվելու են զինված ապստամբության: Սա չափազանց կարևոր հանգամանք էր: Առաջին անգամ փորձ է արվում հաղթահարելու սեփական ուժերի նկատմամբ ավանդական անվստահության բարդույթը և կրավորական ու անզոր կեցվածքից անցնելու առավել գործուն դիրքորոշման: Սույն հանգամանքը որակապես փոխելու էր հայ ազատագրական շարժման հետագա ընթացքը: Անգեղակոթի ժողովի մյուս կարևոր նորույթը Ռուսաստանի Պետրոս I ցարին հղված դիմումն էր, որը վկայում է, թե նրանից ևս ակնկալվել է ռազմական օգնություն: Ճիշտ է, այդ շրջանում ռուսական գործոնը խիստ անորոշ էր և ոչ հստակ, բայց կարևոր էր, որ այն աստիճանաբար թափանցում էր հայ ազատագրական շարժման գաղափարաբանության մեջ:*

*Բացի նշված դիմումներից, Անգեղակոթի ժողովը Օրուն հանձնեց մելիքների կողմից ստորագրված ու կնքված, սակայն չգրված մի թուղթ՝ լիազորելով նրան իրենց անունից, ըստ անհրաժեշտության օգտագործել:*

*Անգեղակոթի ժողովը խորհրդակցությանը մասնակցած*

*հոգևորականներից Մինաս վարդապետ Տիգրանյանցին նշանակում է Օրու օգնական և քարտուղար: Մելիքների դիմումնագրերով և Տիգրանյանցի ուղեկցությամբ 1699 թ. ապրիլի 29-ին Իսրայել Օրին մեկնում է Եվրոպա՝ հայ-արևմտաեվրոպական բանակցությունները շարունակելու:*

*գ. Հայաստանի ազատագրության Պֆալցյան ծրագիրը: 1699 թ. սեպտեմբերին Իսրայել Օրին և Մինաս վարդապետը ժամանեցին Դյուսելդորֆ, սակայն Հովհան Վիլհելմի հիվանդության պատճառով առժամանակ ստիպված էին երկար սպասել ընդունելության: Այդ ընթացքում Օրին մշակեց Հայաստանի ազատագրման իր առաջին ծրագիրը, որը հայտնի է «Պֆալցյան ծրագիր» անունով:*

*Ծրագիրը կազմված էր դիվանագիտական բարձր հմտությամբ ու խորաթափանցությամբ: Այն վկայում է նրա հեղինակի բազմակողմանի պատրաստվածության, աշխարհի քաղաքական անցուդարձերի, ռազմական գործի և արվեստի վերաբերյալ խոր ու բազմակողմանի դիտելիքների մասին: Հայ ազատագրական շարժման պատմության մեջ սա չուներ իր նախադեպը: Դա առաջին մշակված ծրագիրն էր, որ սկիզբ էր դնում հայ ազգային-ազատագրական քաղաքական գիտակցությանը, դործնական հողի վրա դնում ազատագրական շարժման գաղափարախոսությունը, դրան տալիս առարկայական բովանդակություն: Դրանով այն ոտք դրեց ավելի գիտակցական ու կազմակերպված փուլ:*

*Պֆալցյան ծրագիրը բաղկացած էր 36 կետից: Ծրագրի համաձայն եվրոպական երեք երկրներ՝ Ավստրիան, Տոսկանան և Պֆալցը, Հռոմի պապի հավանությամբ ու աջակցությամբ կազմելու էին հակաթուրքական Եռյակ դաշինք: Միավորելով իրենց ռազմական ուժերը դաշինքի երկրները արշավանք էին սկսելու դեպի Հայաստան անշուշտ նախապես ապահովելով ինչպես Լեհաստանի, այնպես էլ Ռուսաստանի համաձայնությունը: Այս համոզմունքն ուներ քաղաքական հիմք՝ նկատի ունենալով վերջին երկու երկրների չեշտված հակաթուրքական դիրքորոշումը: Ծրագրում մանրամասն հաշվարկված էին թնդանոթներն ու հրացանները, վառոդն ու ձիերը, զորքն ու*

*զինվորները, պարենն ու անհրաժեշտ մյուս պարագաները: Ռազմական արշավանքի ամբողջ ծախսերը հոգալու էին հայերը: Դաշնակիցների միացյալ 25 հազարանոց զորաբանակը 1700 թ. մայիսին սկսելու էր իր արշավանքը: Անցնելով Բոհեմիայով, Լեհաստանով ու Ռուսաստանով՝ այն Վոլգայի վրայով հանգրվանելու էր Աստրախանում: Նախատեսված էր, որ այստեղ մարտակից զորքերին միանալու էր նաև երկու հազարանոց հայկական մի զորամաս, որը դաշնակիցներին ուղեկցելու էր դեպի Հայաստան: Ռուսաստանի տրամադրած ռազմանավերով բանակը փոխադրվելու էր Անդրկովկաս և ափ էր հանվելու պարսկական սահմանագլխում, որտեղից էլ պետք է սկսվեր ազատագրական արշավանքը դեպի Հայաստան: Ծրագրում կարևոր տեղ էր հատկացված հայկական ապստամբական ուժերի գործունեությանը: Այն պահին, երբ դաշնակից ուժերը մուտք կգործեին Հայաստան, անմիջապես սկսվելու էր համընդհանուր զինված ապստամբություն և 100 հազարանոց զինված հայկական բանակի վրա էր ընկնելու Հայաստանն ազատագրելու հիմնական հոգսը: Փաստորեն, օտար բանակի ներկայությունը ծառայելու էր սոսկ որպես ազդակ, իսկ Հայաստանի ազատագրումն իրականացնելու էին հայ ապստամբական ուժերը: Ենթադրվում էր, որ հակապարսկական ապստամբությունն սկսելուց անմիջապես հետո արևմտահայերի 80 հազարանոց մի զորամաս օգնության էր շտապելու իր արևելահայ եղբայրներին: Սա գործողություններին տալու էր համահայկական բովանդակություն և ընթացք: Ամբողջ Արևելյան Հայաստանի ազատագրման համար Օրին նախատեսում էր ընդամենը 20–25 օր, որը հնարավոր էր համարվում, հաշվի առնելով այստեղ պարսկական ռազմական ուժերի սակավությունն ու թերզինվածությունը և ուխտակից բանակների կազմակերպվածությունն ու տեխնիկան: Կարևոր գործոն էր նաև հայերի խանդավառությունն ու կամքը: Թերևս չափազանցություն էր միայն հայ ապստամբական ուժերի թվաքանակը, որը չէր արտահայտում իրական վիճակը: Ծրագրի համաձայն այս արշավանքին մասնակցելու էր նաև Ռուսաստանը, սակայն մեկ այլ ուղղությամբ: 30-հազարանոց ռուսական բանակը Հյուսիսային Կովկասից շարժվելու էր*

*դեպի Վրաստան և օգնելու էր վրաց ժողովրդին՝ ազատագրվելու օտար տիրապետությունից: Օրին հմտորեն շեշտում էր երկու ժողովուրդների ազատագրական համատեղ պայքարի անհրաժեշտությունն ու նրբորեն բաժանում գլխավոր դերերը՝ Հայաստանն ազատագրվելու էր Եռյակ դաշինքի, իսկ Վրաստանը՝ Ռուսաստանի կողմից: Ազատագրված Հայաստանի բնակավայրերում պարզվելու էին Քրիստոսի խաչելությունն ու Գրիգոր Լուսավորչի դիմանկարները պատկերող հայկական դրոշները: Անմիջապես վերականգնվելու էր Արևելյան Հայաստանի անկախությունը, որի թագավոր էր հռչակվելու Հովհան Վիլհելմը: Հայաստանի սահմաններում ընդգրկվելու էին՝ Լոռին, Գանձակը, Գեղարքունիքը, Արցախը, Սյունիքը, Նախիջևանը, Արարատյան դաշտը, Շիրակը, մայրաքաղաք էր հռչակվելու Երևանը: Անհրաժեշտ բոլոր միջոցներով ապահովվելու էր Թուրքիայի չեզոքությունը, որը հնարավոր էր դառնում թուրք-պարսկական թշնամական հարաբերությունների պայմաններում:*

*Այսպիսով, Արևմտյան Հայաստանի ազատագրության հարցը մնում էր առկախ, ազատագրվելու էր միայն Արևելյան Հայաստանը: Իսկ Թուրքիայի հնարավոր միջամտության դեպքում ռազմական գործողություններ էին սկսվելու նաև նրա դեմ, թեև իրադարձությունների նման շրջադարձն այս պահին ցանկալի չէր համարվում: Օրին, անշուշտ, հաշվի էր առնում արդեն 1699 թ. Կարլովիցում Ավստրիայի և Թուրքիայի միջև սկսված հաշտության բանակցությունները, ու պայմանագիր կնքվելու դեպքում՝ Ավստրիայի հնարավոր չեզոքության իրողությունը: Ծրագրի այն մասը, որ վերաբերում էր զուտ Անդրկովկասի քաղաքական կացությանն ու ռազմական վիճակին, հայ ազատագրական շարժման ծավալման հնարավորություններին, թվում է, ավելի իրատես էր: Առանձին չափազանցություններով հանդերձ, այն իրականանալի էր. ծրագիրը կազմված էր բանիմացությամբ: Այստեղ զարմանալի խորաթափանցությամբ կանխատեսվել ու հաշվի էին առնվել ոչ միայն Պարսկաստանում տեղի ունենալիք շատ իրադարձություններ, նրա թուլացումն ու անկումը, այլև Ռուսաստանի հնարավոր տարածաշրջանային հետաքրքրությունները և այդ հետաքրքրություններում Հայաս-*

*տանի տեղն ու դերը: Իրատես չէր, սակայն, ծրագրի այն մասը, որ վերաբերում էր համաեվրոպական շահախնդրություններին, որը և ի դերև ելավ անմիջապես:*

*Ծրագիրը Հովհան Վիլհելմին ներկայացվեց 1699 թ. հոկտեմբերին: Առանձին, ոչ էական սրբագրումներից հետո մեծ իշխանն իր հավանությունը տվեց փաստաթղթին ու Օրուն առաջարկեց մեկնել Տոսկանա, Ավստրիա, Հռոմ և Ռուսաստան՝ առաջիկա արշավանքի կազմակերպման վերաբերյալ իր անունից պաշտոնական բանակցություններ վարելու: 1700 թ. հունվարին Օրին արդեն Ֆլորենցիայում էր, ուր Կոզմաս III Մեդիչին հավաստում է իր հավատարմությունը դաշինքին ու խոստանում տրամադրել համապատասխան ռազմական ուժ, ֆինանսներ և տեխնիկա: Նույն թվականի հունիսին նրան ընդունում է պապը և խոստանում հնարավոր բոլոր միջոցներով և իր հեղինակությամբ աջակցել ապագա արշավանքի իրագործմանը: Անշուշտ, իր հերթին, Օրին ևս մեկ անգամ պապին հավաստիացնում է, որ հայերը պատրաստ են դավանափոխության:*

*1700 թ. վերջերին Օրին և իր ուղեկիցներն արդեն Վիեննայում էին, ուր ընդունելության արժանացան Լեոպոլդ I կայսեր կողմից: Եվրոպայի ամենաազդեցիկ և հզոր տիրակալներից մեկը չեշտված հարգանքով ընդունեց հայ բանագնացին և բավականին հանդամանորեն ծանոթացավ ներկայացված ծրագրի կետերին: Ծրագիրը կազմվել էր ուղիղ մեկ տարի առաջ և այդ ընթացքում քաղաքական իրադրությունը Եվրոպայում խիստ փոխվել էր: Նախ՝ հաշտության պայմանագիր էր կնքվել Թուրքիայի հետ՝ ի շահ Ավստրիայի, և վերջինս իր ծրագրերից հանել էր Արևելյան հարցը, որի հետ իր նշանակությունն ու այժմեականությունը կորցրել էր նաև Հայաստանի ազատագրման հարցը: Մասնակցել նման մի վիթխարի, կասկածելի ընթացք և ելք ունեցող արշավանքի, անշուշտ, Ավստրիան իրեն թույլ տալ չէր կարող՝ հենց թեկուզ Թուրքիայի հետ նոր ձեռք բերված այնքան անհրաժեշտ դաշնակցությունը չկորցնելու պատճառով: Իր հերթին, Թուրքիան չէր կարող անտարբեր դիտորդի դերում հանդես գալ նման մի արշավանքի ժամանակ: Մյուս կողմից՝ քաղաքական բարդ իրավիճակ էր ստեղծվել Արևմտյան Եվրո-*

*պայում, ուր Ավստրիայի ու Ֆրանսիայի շահերը սկսել էին բախվել իսպանական գահի համար ծավալվող պայքարում: Ավստրիան, որ լիովին երես էր դարձրել Արևելքից, Հոլանդիայի և Անգլիայի հետ նախապատրաստվում էր հակահարված տալ Բուրբոնների ծավալապաշտական քաղաքականությանը: Նշելի է, որ վիեննական այս հանդիպումներն ունեցան իրատեսական արդյունք: Ինքը՝ Լեոպոլդ կայսրը, Օրուն հուշեց դիմել Ռուսաստանի ցարին և պարզել, թե չէ՞ր կամենա արդյոք ցարը ստանձնել Պարսկահայաստանի ազատագրման գործը և թե արդյո՞ք ցարը ի վիճակի չէ՞ր լինի անձամբ միջամտելու, քանի որ Պարսկաստանը մոտ էր ու սահմանակից ոչ թե Ավստրիային, այլ Մոսկովյան պետությանը: Կայսրը խոստացավ անձամբ բարեխոսել ցարի առջև և Օրուն լավագույն երաշխավորագրերով ներկայացնել նրան:*

*Ավստրիայի հրաժարվելը ապագա արշավանքին խափանեց Եռյակ դաշինքի ստեղծումը. և Օրու Պֆալցյան ծրագիրը մնաց որպես չիրականացած երազանք, հայ ազատագրական շարժման բարդ ճանապարհի հերթական մի ձախորդ շրջափուլ: Ինքը՝ Օրին՝ իր խոհուն և սթափ կեցվածքով, հասկացավ, որ Հայաստանի ազատագրման Պֆալցյան ծրագիրն արդեն դուրս է եկել օրակարգից և անհրաժեշտ է հարցի լուծման համար փնտրել նոր ուղիներ, գտնել նոր հանգրվան, մշակել նոր ծրագիր: Ահա թե ինչու Հայաստանի ազատագրման հեռանկարը, հայերի քաղաքական կողմնորոշումը պետք էր ուղղել, տեղափոխել Արևմուտքից Հյուսիս, դեպի երիտասարդ Ռուսաստան: Օրին հիանալի գիտակցում էր, որ այդ պահին ողջ Եվրոպայում միակ երկիրը, որ ծավալվելու էր դեպի Կովկաս, դեպի Պարսկաստան, դա Ռուսաստանն էր և միակը, որ ի վիճակի էր ու տրամադիր օգնելու Հայաստանի ազատագրությանը: Դա էին հուշում ոչ միայն վիեննական դասերը, այլև քաղաքական նոր կացությունն ու ուժերի նոր դասավորությունը Ռուսաստանի ապագա արտաքին-քաղաքական շահախնդրություններում: Պետք էր շտապել և օգտագործել այդ շահախնդրությունները: Անշուշտ, այս կտրուկ շրջադարձը տրամաբանական վախճանն էր հայ-արևմտաեվրոպական այն երկարատև ու ձիգ անարդյունք բանակ-*

*ցությունների, որ վարել էին նախորդները դարեր ի վեր և հենց ինքը՝ Օրին, տարիներ շարունակ:*

*դ. Հայաստանի ազատագրության Մոսկովյան ծրագիրը: XVII դարի վերջերին Ռուսաստանը մեծ ջանքեր էր գործադրում ծովային նոր, հարմար ուղիների տիրապետելու համար: Հետաքրքրություններից մեկն ավերվում էր Սև և Ազով ծովերի հետ, որոնք գտնվում էին Թուրքիայի տիրապետության ներքո: Կասպից ծովը նրա առջև բացում էր անկում ապրող Պարսկաստանի մետաքսով ու հումքով հարուստ տարածքները: Սակայն այդ պահին Ռուսաստանի համար առաջնահերթը հյուսիսային ծովային ամենադժվարադույն ու ամենաշահավետ ուղի՝ Բալթիկ ծով դուրս գալն էր: Այս նպատակով նա պատերազմ էր սկսել (1700 թվականից) Եվրոպայի հզորագույն տերություններից մեկի՝ Շվեդիայի հետ, որին էլ պատկանում էին Բալթիկ ծովի՝ Ռուսաստանին շահագրգռող բոլոր ափերը: Պատերազմի սկիզբը ուղեկցվում էր Ռուսաստանի համար ծանր, ջախջախիչ պարտություններով: Բայց երիտասարդ թագավոր Պետրոս I-ը լի էր կամքով ու վճռականությամբ ոչ միայն դրությունը շտկելու, այլև պատերազմը հաղթական ավարտին հասցնելու:*

*Ռուսաստանի համար հենց այս ծանր պահին էր, որ 1701 թ. հուլիսի 7-ին Իսրայել Օրին և իրեն ուղեկցողները հասան Մոսկվա: Օրին Մոսկվա էր ժամանել Ավստրիայի կայսեր և Պֆալցի կուրֆյուրստի կողմից տրված հանձնարարականներով, Լեհաստանի թագավոր Ավգուստ II-ի անցագրով և դիտվում էր որպես նրանց դեսպանորդ: Դրանով պետք է բացատրել այն մեծարանքներն ու պատշաճ ընդունելությունը, որ նրան արժանացրին ռուսական արքունիքում: Օրուն անմիջապես հատկացվեց առանձին բնակարան և թիկնապահ պահակախումբ:*

*1701 թ. հուլիսի 11-ին տեղի ունեցավ Իսրայել Օրու և Ռուսաստանի վարչապետ Ֆ. Ա. Գոլովինի հանդիպումը, որի ժամանակ դեսպանը բանավոր բացատրություններ տվեց իր առաքելության վերաբերյալ: Երեք օր անց՝ հուլիսի 14-ին, նա Պետրոս I-ին գրավոր զեկուցագիր ներկայացրեց, որտեղ հայ ազատագրական շարժման պատմության մեջ առաջին անգամ Հայաստանի ազատագրության գործը վերապահում էր Ռու-*

*սաստանին: Այստեղ նա շեշտում է, որ հայերը վաղուց ի վեր իրենց հույսը կապել են Ռուսաստանից սպասվելիք օգնության հետ: Զեկուցագրում ասված էր, որ «այս խեղճ ժողովուրդը միշտ ապրել է ու ապրում է Ձեր թագավորական մեծությունից օգնություն ակնկալելու հույսով: Ժողովրդի մեջ կա մի նախախնամություն, թե... գալու է Մոսկվայի ողոստոսափառ տնից ինչ-որ մի իշխան, Ալեքսանդր Մեծից ավելի քաջ մեկը, որը ազատելու է քրիստոնյաներին և վերականգնելու է Հայոց թագավորությունը»: Հայ ազատագրական մտքի այս հերթական կտրուկ շրջադարձը պայմանավորված էր ոչ միայն Օրու ճկունությամբ, այլև ստեղծված նոր իրադրությամբ:*

*Պետրոս I-ին չափազանց հետաքրքրեց Օրու անձն ու առաքելությունը, և նա Գոլովինի միջոցով պահանջեց իրեն մանրամասն ծրագիր ներկայացնել Հայաստանի ազատագրության հնարավոր տարբերակների և այդ գործում Ռուսաստանին վերապահված դերի մասին: Ընդամենը տասն օրվա ընթացքում Օրին մշակեց և ցարական արքունիք ներկայացրեց Հայաստանի ազատագրության միանգամայն նոր ծրագիր, որը հայտնի է «Մոսկովյան ծրագիր» անունով: Այն Պետրոս I-ին ներկայացվեց հուլիսի 25-ին: Ծրագիրը բաղկացած էր 18 կետից: Ծրագրի համաձայն ռուսական 25-հազարանոց բանակը (15 հազար հետևակ և 10 հազար հեծյալ)՝ անհրաժեշտ քանակությամբ թնդանոթներով, ռազմերթ էր սկսելու նույն թվականի հոկտեմբերի սկզբներին: Բանակի մի մասը՝ 15 հազար զինվոր, շարժվելու էր ցամաքային ճանապարհով՝ Թերեք-Դերբենդ ուղղությամբ: Մյուս զորագունդը՝ 10 հազար զինվորներով, ճանապարհվելու էր Կասպից ծովով: Նիզովայի նավահանգստում ափ իջնելուց հետո ռուսական բանակը սրընթաց երթով շարժվելու էր հետևյալ չորս ուղղություններով՝ 1. Գանձակ, 2. Լոռի, 3. Կապան, 4. Նախիջևան: Նախիջևանում ռուսական զորքերին միանալու էին հայկական ապստամբական ուժերը (շուրջ 100 հազար զինվոր) և համատեղ սկսելու էին Հայաստանի ազատագրության ծրագրի իրականացումը: Հարվածի հիմնական ուղղությունը պետք է լիներ Երևանը, որը գրավելուց հետո ավարտվելու էր Հայաստանի արևելյան հատվածի ազատա-*

*գրումը և վերականգնվելու էր հայկական պետականությունը: Ռազմարշավի ամբողջ ծախսերը հոգալու էր հայկական կողմը: Ռուսական բանակը լիովին ապահովվելու էր պարենով, հաղորդակցության միջոցներով: Ներկայացված փաստաթղթում Օրին քանիցս շեշտում է Հայաստանի տնտեսական հարուստ կյանքի, մեծաշահ առևտրի, հանքավայրերի մասին, որով կարծես ցանկանում էր շահագրգռել ռուսական կողմին: Ռազմական այս ամբողջ արշավանքը, այսինքն՝ Արևելյան Հայաստանի ազատագրումը պետք է տեղի ունենար շուրջ 20 օրվա ընթացքում: Կարևոր է, որ Օրին Հայաստանի հնարավոր դաշնակցի դերը հատկացնում էր Վրաստանին, որի գահազուրկ թագավոր Արչիլ II-ը այդ ժամանակ ապաստան էր գտել Մոսկվայում: Անձնական հանդիպումների ժամանակ Արչիլը Օրուն հավաստիացրել էր, թե վրաց ժողովուրդը ևս կապստամբի, եթե ռուսական մի փոքրաթիվ զորամաս մտնի Վրաստան: Փաստորեն երկու երկրներում էլ պետականության վերականգնման հիմնական ուժը լինելու էին ազգային-ազատագրական բանակները, իսկ Ռուսաստանը առավելապես հանդես էր գալու որպես երաշխավոր: Եթե միջազգային գրության վատթարացման դեպքում Թուրքիան փորձեր խառնվել իրադարձություններին հօգուտ Պարսկաստանի, նախատեսվում էր եվրոպական երկրների միջամտությունը: Օրին ծրագրին կցել էր Հայաստանի և հարևան երկրների ձեռանկար քարտեզը, որպեսզի ռուսական ռազմական գործիչներն առավել առարկայական պատկերացում ունենային Հայաստանի ճանապարհների, քաղաքների, բերդերի տեղագրության ու տեղանքի մասին: Այս ծրագրում որևէ խոսք չկար հայերի դավանափոխության մասին, որ նախորդ ծրագրի հիմնակետերից մեկն էր: Դա բնական էր ու հասկանալի, քանի ռուսական կողմին հարցի այդ մասը բնավ չէր հետաքրքրում:*

*Ծրագիրը կազմված էր Հայաստանի, Կովկասի ու Մերձավոր Արևելքի կացության քաջատեղյակությամբ: Փաստաթղթի հեղինակի բացատրություններն ու առաջարկությունները հիմնավորված էին ու համոզիչ: Նախորդ ծրագրի հետ համեմատած սա առավել իրատեսական էր և ուներ ավելի գործնական բնույթ:*

*Ծրագիրն ու քարտեզը խիստ հետաքրքրեցին Պետրոս I-ին, և նա ցանկություն հայտնեց անձամբ բացատրություններ ստանալ նրա հեղինակից: Պետրոս I-ի և Օրու առաջին տեսակցությունը տեղի ունեցավ 1701 թ. հոկտեմբերի 7-ին իշխան Գոլովինի պալատում: Թագավորն ուշի-ուշով լսեց հայ բանագնացին և համոզվեց, որ գործ ունի լավիմաց մեկի հետ, որը կարող էր օգտակար լինել իր քաղաքական հետագա նպատակների համար: Ռուսաստանն արդեն խիստ հետաքրքրություն էր ցուցաբերում իր երկրի հարավային սահմաններից այն կողմ գտնվող տարածքների նկատմամբ, ցանկանում էր ընդարձակել իր քաղաքական ազդեցության ոլորտը Արևելքում, ամրանալ Կասպից ծովի ափերին և վերահսկողություն հաստատել մետաքսի շահաբեր շրջանների վրա: Այս խնդիրների իրագործման ճանապարհին, անշուշտ, հայերն ու Հայաստանը կարող էին անդնահատելի ծառայություններ մատուցել: Փաստորեն ռուսական կողմը ևս շահագրգռված էր Հայաստանի անկախության վերականգնմամբ և նման մի բարեկամ երկրի առկայությունը բխում էր Ռուսաստանի քաղաքական շահերից: Հանդիպման վերջում ցարը որոշակիորեն հայտնեց, որ ինքը ընդառաջելու է հայերի այս դիմումին, որը հնարավոր կլիներ Հյուսիսային պատերազմի ավարտից հետո: Ժամանակ չկորցնելու համար նա հայ դիվանագետին խորհուրդ տվեց շարունակել հայ-ռուսական երկխոսությունը և նախապատրաստվել ապագա իրադարձություններին: Դեռ ավելին, 1702 թ. մարտին Պետրոս I-ը հատուկ գրությամբ իրավունք վերապահեց Օրուն՝ իր ծրագրի մասին հայտնել մելիքներին և հոգևոր առաջնորդներին:*

*Ռուսական կողմի գիտությամբ 1702 թ. Օրին Հայաստան ուղարկեց մոսկվարնակ մի հայ զորականի՝ կապիտան Միրոն Վասիլևին, որը գրություններ տարավ Էջմիածնի և Գանձասարի կաթողիկոսներին, մելիքներին: Էջմիածնի և Գանձասարի միաբանները անորոշ, խուսափողական և զգուշավոր պատասխաններ ուղարկեցին, իսկ մելիքներից ընդհանրապես որևէ արձագանք չտվին: Այս իրողությունը կարող էր սասանել Օրու հեղինակությունը ցարի առջև, և ամենակարևորը՝ կասկածի տեղիք տալ հայերի ռուսական կողմնորոշման մասին: Բայց հասկանալի*

*էր, թե ինչու էին հայկական շրջանակները ցուցաբերել այդպիսի ծայրահեղ զգուշավորություն. պարսկական իշխանություններն ինչ-որ չափով տեղյակ էին տարվող բանակցություններին և պատրաստ էին խանգարել, պատժել անհնազանդ հպատակներին:*

*Ստեղծված անհարմար դրությունից ելք փնտրելու նպատակով Օրին և Մինաս Տիգրանյանցը հմտորեն օգտագործեցին Անգեղակոթի ժողովի կողմից իրենց տրված մաքուր, սակայն ստորագրված թղթերը: Նրանք կազմեցին մելիքների անունից Պետրոս I-ին ուղղված մի դիմում՝ թվագրված 1703 թ. մայիսի 7-ով: Այստեղ վերստին հավաստում էին հայերի անխախտ քաղաքական դիրքորոշումը Ռուսաստանի հանդեպ և կրկին շեշտում Ռուսաստանի աջակցությամբ ազատություն ձեռք բերելու ակնկալությունները. «Հավատում ենք, որ Ձեզնով է լինելու հայերի ազատագրումը»,- գրում էին նրանք Պետրոս I-ին:*

*Ելքը գտնված էր, և Օրին ավելի դյուրությամբ կարող էր շարունակել հետագա բանակցությունները: Ցարի հետ նա հանդիպեց ևս մի քանի անգամ և հասկացավ, որ ձգձգվող ռուս-շվեդական պատերազմը առժամանակ Ռուսաստանին ստիպելու է հետին պլան մղել Հայաստանի ազատագրության հարցը: Սակայն Օրու համար այդ հարցը երբեք դուրս չեկավ օրակարգից: Նա չափազանց եռանդուն շարունակում էր բանակցությունները վրաց քաղաքական շրջանակների հետ, ծանոթանում ռուսական ռազմական արվեստին: Ռուսական բանակի առաջին հաղթանակները շվեդների դեմ է՛լ ավելի աշխուժացրին Օրու գործունեությունը: Նա հստակեցրեց ապագա ազատագրական արշավանքի մանրամասները, պատրաստել տվեց Հայաստանի նոր, առավել հանգամանալից քարտեզ:*

*Պարսկաստանի ներքին դրության վերաբերյալ ավելի ճշգրիտ տեղեկություններ ունենալու, հայ և վրաց ապստամբական ուժերը համախմբելու և այլ անհրաժեշտ գործողություններ կատարելու համար Օրին առաջ քաշեց իր գլխավորությամբ Պարսկաստան ռուսական մեծ դեսպանություն ուղարկելու գաղափարը, որին ռուսական կողմը անմիջապես հավանություն տվեց: Դեսպանությունը պետք է ժամաներ Սպահան՝ շահ Հու-*

*սեյն I-ին ռուսաց թագավորի բարեկամությունը հավաստիացնելու նպատակով, բայց իրականում պետք է զբաղվեր հետախուզական անհրաժեշտ տվյալներ հայթայթելով և նախապատրաստական աշխատանք տաներ տեղի հայերի և վրացիների շրջանում: Իր դերը չեշտելու և կասկածներ չհարուցելու համար Օրին նաև խնդրում է իրեն շնորհել ռուսական բանակի գնդապետի աստիճան: Պետրոս I-ը հավանություն է տալիս պարսկական դեսպանության գաղափարին և ընդառաջելով Օրու խնդրանքին՝ նրա դիմումի վրա մակագրում է. «Շնորհել գնդապետի կոչում՝ ըստ իր ցանկության»:*

*Մինչև Պարսկաստան մեկնելը Օրին անհրաժեշտ համարեց մեկ անգամ ևս լինել Եվրոպայում և այստեղ մի վերջին անգամ բանակցություններ վարել պապի, ավստրիական կայսեր և Հովհան Վիլհելմի հետ՝ ռուսական բանակի պարսկական ապագա արշավանքի վերաբերյալ նրանց դիրքորոշումը ճշգրտելու համար: 1704-1706 թթ. Օրին եղավ եվրոպական մի շարք երկրներում, հանդիպեց Ավստրիայի կայսրին, Պֆալցի մեծ իշխանին, Կղեմես XI պապից ստացավ հավատարմագիր և նամակ՝ հասցեագրված շահին: Շատ կարևոր էր այն, որ Օրին իր ունեցած նյութական սուղ միջոցներով և հայ առևտրականների կողմից իրեն փոխտրված գումարներով Ամստերդամում գնեց զենք, հանդերձանք և Արխանգելսկի վրայով ուղարկեց Աստրախան՝ այնտեղից Հայաստան տեղափոխելու մտադրությամբ: 1706 թ. հոկտեմբերին նա արդեն Մոսկվայում էր, իսկ 1707 թ. հուլիսի կեսերին դեսպանությունը ճանապարհվում է Պարսկաստան:*

*Որոշ դժվարություններ հաղթահարելուց հետո 1709 թ. հուլիսին դեսպանը ժամանեց Սպահան: Իսրայել Օրու դեսպանությունը մեծ հետաքրքրություն առաջացրեց ինչպես բուն Պարսկաստանում, այնպես էլ Անդրկովկասում, դեռ ավելին՝ այն ունեցավ միջազգային հնչեղություն: Պարսկաստանում կաթոլիկական քարոզչությամբ զբաղվող ֆրանսիացի միսիոներները, որ միաժամանակ զբաղված էին հետախուզական տվյալներ հավաքելով, փորձեցին անբարենպաստ կարծիք ստեղծել դեսպանության և անձամբ Օրու նկատմամբ: Քաջ գիտակցելով Օրու*

*դեսպանության նպատակները՝ ֆրանսիացիներն ամեն կերպ աշխատում էին խոչընդոտել նրա հանդիպումը շահի հետ: Հենց ֆրանսիացիների ջանքերով էր, որ իմացվեց ու տարածվեց դեսպանի հայ լինելու հանգամանքը, որն անսպասելի և ցնցող տպավորություն թողեց պարսկական քաղաքական-դիվանագիտական շրջանակներում: Չպետք է մոռանալ, որ Օրին պաշտոնապես համարվում էր նաև Հռոմի պապի դեսպանորդ և հնարավոր չէր վերջնականապես խոչընդոտել նրա բանագնացությունը: Ավելին, Օրին հանդիսավորությամբ ընդունվեց շահի կողմից: Հուսեյն I-ը դրականորեն վերաբերվեց պապի խնդրանքին՝ Պարսկաստանում քրիստոնյաների վիճակը բարելավելու վերաբերյալ: Շահը, սակայն, առանձին գրություն ուղարկեց ցարին, որը լի էր հայերի նկատմամբ անբարյացակամ արտահայտություններով, այստեղ նա հասկացնում էր, որ չի խրախուսում հայ-ռուսական մերձեցումը:*

*Կատարելով դեսպանական իր առաքելությունը՝ 1709 թ. օգոստոսի կեսերին Օրին Սպահանից հետ վերադարձավ: Ամբողջ երկու տարի նա մնաց Անդրկովկասում: Դժվար չէ կռահել, թե այդքան երկար ժամանակ ինչով էր նա զբաղված. Օրին եռանդուն գործունեություն էր ծավալել հայ քաղաքական ուժերին համախմբելու, նրանց դեպի Ռուսաստան կողմնորոշելու ուղղությամբ: Անձամբ հանդիպել էր Ամենայն Հայոց կաթողիկոս Ալեքսանդր Ա Ջուղայեցու և Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանի հետ: Առավել երկար նա մնաց Սյունիքում և Արցախում, համախմբեց տեղական ուժերը, Աստրախանից ստացված զենքերը բաժանեց ըստ անհրաժեշտության: Հանդիպումներ ունեցավ նաև վրաց ռազմաքաղաքական գործիչների հետ՝ պայմանավորվելով հետագա միասնական գործողությունների մասին: Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանը, Օրու գաղափարներով խանդավառված, միացավ նրա պատվիրակությանը՝ ռուսաց ցարին անձամբ բացատրություններ տալու նպատակով: Այս հանգամանքը հայ-ռուսական հետագա հարաբերություններին տալու էր ավելի գործնական ու պաշտոնական բնույթ: Ի վերջո, 1711 թ. ամռանը պատվիրակությունը Կասպից ծովով նավարկեց մինչև Աստրախան, ուր հասավ*

*օգոստոսի սկզբներին: Այստեղից ցամաքային ճանապարհով Օրին շտապում էր վերադառնալ Մոսկվա: Նրա համար Ռուսաստանի պարսկական արշավանքի ուրվագիծը դարձել էր ավելի ու ավելի որոշակի: Սակայն տեղի ունեցավ անսպասելին. օգոստոսի վերջերին ուժերի ծաղկուն շրջանում, 50 տարեկանում, կասկածելի ու մութ հանգամանքներում Աստրախանում հանկարծամահ եղավ հայ ազատագրական շարժման անխոնջ և եռանդուն գործիչը: Եսայի կաթողիկոսը Աստրախանի հայկական եկեղեցու բակում կատարելով Օրու թաղման կարգը՝ ձեռնունայն վերադարձավ Արցախ:*

*Պատվիրակության փաստաթղթերն ու իրերը ցիրուցան եղան և անհետացան: Օրու մահվան մասին Պետրոս I-ը իմացավ Կազանի նահանգապետ Պ. Մ. Ապրակսինի՝ ցարին ուղղված 1711 թ. նոյեմբերի 7-ի գրությունից: Օրու մահվանից ուղիղ 11 տարի անց՝ 1722 թ., Պետրոս I-ը վերջապես կազմակերպեց պարսկական արշավանքը: Բայց այդ արշավանքը չունեցավ այն արդյունքը, որի համար ապրել և պայքարել էր ազատագրական շարժման նշանավոր գործիչն ու հայ մեծ մտածողը:*

## 2. ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՆ ԱՐՑԱԽՈՒՄ ԵՎ ՍՅՈՒՆԻՔՈՒՄ XVIII ԴԱՐԻ 20-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ: ՀԱՅԿԱԿԱՆ ԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

***ա. Պետրոս I-ի պարսկական արշավանքը:*** *Ռուսաստանի պատերազմը Բալթիկ ծովի շրջանում ավելի հաջողությամբ էր ընթանում XVIII դ. 10-ական թվականներին: Երբ ակնհայտ դարձավ, որ հաղթանակը շվեդների դեմ ժամանակի խնդիր է, Պետրոս I-ը սկսեց նախապատրաստվել Կասպից ծովի ափերին ամրապնդվելու խնդրի իրականացմանը: Դրա համար նախապես անհրաժեշտ էր ապահովել տեղական ժողովուրդների՝ հատկապես հայերի ու վրացիների աջակցությունը, ինչպես ժամանակին հավաստիացրել էր Իսրայել Օրին: Անհրաժեշտ էր նաև թարմացնել տեղեկությունները Պարսկաստանում տիրող իրավիճակի մասին: Ահա այս նպատակներն էին հետապնդում*

*այն զույգ դեսպանությունները, որ Պետրոս I-ը ուղարկեց Պարսկաստան և Անդրկովկաս: Նրա քաղաքական-ռազմական չահախնդրությունները ներդաշնակում էին տեղական ժողովուրդների ազատագրական ձգտումների հետ, որ տվյալ պահին համընկնում էին Ռուսաստանի արտաքին քաղաքականության միտումներին:*

*1715 թ. Պարսկաստան ուղևորվեց Արտեմի Վոլինսկու գլխավորած դեսպանությունը: Մասնավորապես հիմնական նպատակներից մեկը տեղի ժողովուրդների տրամադրություններին հաղորդակից լինելն էր: Վոլինսկին հրահանգ ուներ. «Հետախուզել հայ ժողովրդի վիճակը, չա՞տ են արդյոք հայերը, ի՞նչ տեղերում են բնակվում, ինչպե՞ս են տրամադրված Ցարական մեծության նկատմամբ»: Վոլինսկին դեռ նոր էր հասել Սպահան, երբ ցարի հրահանգով 1716 թ. Հայաստան ուղևորվեց Օրու գործընկեր Մինաս Տիգրանյանցը, որը 1716–1717 թթ. մի չարք հանդիպումներ ունեցավ հայ գործիչների, մասնավորապես՝ էջմիածնի և Գանձասարի կաթողիկոսների, մելիքների հետ: Ցարին ուղղված զեկուցագրում, կրկնելով Օրուն, նա դարձյալ հավաստիացնում էր. «Եթե Նորին մեծությունը բարեհաճի ռազմական գործողություններ սկսել ընդդեմ պարսիկների, ապա բացարձակապես բոլոր հայերը կանցնեն Ցարական մեծության կողմը»: Նույնը հավաստում էր նաև Վոլինսկին, որը մինչև 1718 թ. մանրամասն ու խորապես ուսումնասիրել էր Պարսկաստանի կացությունը:*

*Այդ ժամանակ Պարսկաստանը խիստ թուլացել էր ներքին երկպառակություններից. երկրի բոլոր ծայրամասերում և անգամ կենտրոնում տեղի էին ունենում հակապետական ապստամբություններ: Ապստամբել էին քրդերն ու արաբները, աֆղաններն ու ուզբեկները: Թուրքիայի սադրանքով լեզգիական (դաղստանցիների) հրոսակախմբերը Դաղստանից պարբերաբար ասպատակում էին Անդրկովկասը և մեծաքանակ ավարով ու գերիներով վերադառնում: Այդ արչավանքներից մեծապես տուժում էին նաև հայերը: Պարսկական պետությունը, տեղական պարսկական վարչակազմը անկարող էին կասեցնել ավարառու արչավանքները: Լեզգիների հերթական արչավանքներից*

*մեկի ժամանակ, 1721 թ. օգոստոսին, Շամախիում թալանվեցին նաև ռուս վաճառականները, նրանցից մի քանիսն էլ սպանվեցին: Պետրոս I-ը, որն ուշի-ուշով հետևում էր Պարսկաստանում տեղի ունեցող իրադարձություններին, անմիջապես որոշեց օգտագործել այդ առիթը: Նա ռազմական գերատեսչություններին կարգադրեց նախապատրաստվել պարսկական ապագա արշավանքին: Պատերազմը Շվեդիայի դեմ արդեն ավարտվել էր հաղթանակով և եռանդուն ցարը անմիջապես մտնում էր մեկ այլ պատերազմի մեջ: Ինչպես երբեք, պահը շատ հարմար էր, և եթե ռուսական կողմը հապաղեր, ապա Անդրկովկասի նկատմամբ հավակնություններ ունեցող Թուրքիան նախահարձակ կլիներ: Հետաքրքիր է, որ պարսկական արշավանքի նախօրյակին ռուսական կողմը պաշտոնապես հայտարարել էր, թե Պետրոս I-ը արշավանքը ձեռնարկում է միմիայն Պարսկաստանը կործանումից փրկելու նպատակով, նրան պաշտպանելու ապստամբներից և Թուրքիայի հնարավոր հարձակումից: Այսպես՝ փորձ էր արվում ձեռք բերել նաև պարսիկների համակրանքը:*

*1722 թ. մայիսին սկսվեց ռուսական բանակի պարսկական արշավանքը: Արշավանքը սկսելուց հետո ցարը Աստրախանից հատուկ դեսպան ուղարկեց վրաց Վախթանգ VI թագավորի մոտ, որով նրան հորդորում էր պատրաստ լինել պարսիկների դեմ ուղղված առաջիկա համատեղ ռազմական գործողություններին և այդ ձեռնարկի մեջ ընդգրկել նաև հայերին: Ցարն առաջարկում էր հայ-վրացական զորքերը փոխադրել Կասպից ծովի մոտերքը՝ Դերբենդի և Բաքվի միջև գտնվող որևէ վայրում ռուսական զորքերին միանալու համար:*

*Վրաստանը Պարսկաստանին ենթակա, բայց առանձին տեղական կառավարում ունեցող, ավատական երկպառակություններով ալեցուն մի փոքրիկ երկիր էր: Նրա թագավոր Վախթանգ VI-ը ուներ ռուսական կողմնորոշում և պատահական չէր Պետրոս I-ի ուղերձը նրան: Իր հերթին Վախթանգը հանդիպումներ էր ունենում հայ գործիչների և մասնավորապես Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանի հետ, որոնք քաջատեղյակ էին Պետրոս I-ի ծրագրերին և պատրաստվում էին աջակցել դրանց իրականացմանը: Որոշվում է միավորել*

*հայ-վրացական ռազմական ուժերը, կենտրոնացնել Գանձակի չրջակայքում և սպասել ռուսական հետագա հրահանգներին:*

*Այսպիսով, հիմք դրվեց հայ-վրացական ռազմական համագործակցությանը: Եթե Վրաստանն ուներ քիչ թե չատ պետական մարմիններ, չուրջ 30-հազարանոց բանակ, ապա Հայաստանը, այդ պահին, դրանք չուներ: Գոյություն ունեին սոսկ փոքրաթիվ, առանձին, անկանոն մելիքական ջոկատներ, որոնք լեզգիների արչավանքների ժամանակ, երբ պարսկական անդրկովկասյան ուժերն ի վիճակի չէին հակահարված տալու, Արցախի, Լոռու, Սյունիքի ինքնապաչտպանության գործը վերցնում էին իրենց վրա: Ինքնապաչտպանական այս մարտերի ժամանակ է, որ Արցախի բոլոր մելիքություններում, մասամբ նաև Սյունիքում և Լոռիում, ստեղծվում են ռազմական ամրացված չրջաններ, որոնք հայտնի են սղնախներ անվամբ: Արցախում սղնախները կազմակերպվել են հիմնականում հին (Ջրաբերդ, Քարագլուխ-Շոչ և այլն) կամ նոր (Գյուլիստան, Ավետարանոց և այլն) ամրոցների չրջակայքում: 20-ական թվականների սկզբներին Արցախի սղնախներն ունեին մի քանի տասնյակ հազարի հասնող, հիմնականում հեծյալ, մարտիկներ:*

*Հայկական զինված ուժերի ստեղծման գործում կարևոր դեր են խաղացել Ավան հարյուրապետը, մելիք Հովսեփը, իսկ ընդհանուր կազմակերպիչն ու գաղափարախոսը Եսայի Հասան-Ջալալյանն էր: Դեռևս 1717 թ. Ավան հարյուրապետը Շոչում ստեղծեց ռազմական մի հզոր հենակետ՝ կամավորական հիմունքներով հավաքված մարտունակ կայազորով, որն իրեն փառքով պսակեց 1722 թ. գարնանը լեզգիների ասպատակությունները հետ մղելու ժամանակ: Այսպիսով, տեղի ունեցավ պատմական չափազանց կարևորագույն իրադարձություն՝ հայկական պետականության կորստից հետո առաջին անգամ վերականգնվում էր հայկական կանոնավոր բանակը, որը կարող էր մղել ոչ միայն պաչտպանական, այլև հարձակողական մարտեր:*

*Հայկական ռազմական ուժերի առկայությունը մասամբ կարող էր փոխել ազատագրական լեգենդի բուն էությունը: Հայաստանի ազատագրման և հայկական պետականության վերա-*

*կանգնման գործում, արտաքին ուժերի հետ միասին, կարևոր գործոն էր դառնում նաև հայկական զինված ուժը: Պետրոս I-ի պարսկական արշավանքը լավագույն առիթ էր դրսևորելու, ցույց տալու, թե ինչի էր ընդունակ հայոց զորքը: Այսպիսով, հայերը չմնացին կողմնակի դիտողի դերում և պատրաստ էին իրենց ջանքերը ներդնելու սեփական հայրենիքի ազատագրման գործին: Սա էր XVIII դարի սկզբների հայ ազատագրական շարժման գլխավոր առանձնահատկությունը:*

*Դեպի Կասպիականի արևմտյան ափերն արշավող ռուսական բանակի կազմում գործում էին նաև հայերից կազմված առանձին ջոկատներ: Նշանավոր էր հատկապես հայկական էսկադրոնը՝ Պետրոս դի Սարգիս Գիլանենցի հրամանատարությամբ: Գործում էին նաև հայկական այլ զորաջոկատներ, որոնց հրամանատարներն էին Աղազար դի Խաչիկը, Այվազ Աբրամովը, Յակով Շամիրովը և ուրիշներ: Այս զորամասերի կազմակերպման, զինման ու հանդերձավորման գործը գլխավորել է Մինաս վարդապետ Տիգրանյանցը: Պետք է ենթադրել, որ Իսրայել Օրու գնած զենքի մի մասը այդ ժամանակ տրամադրվեց նորաստեղծ հայկական զորամասերին: Մերձկասպյան տարածքներում տեղակայված ռուսական բանակի կազմում ընդգրկված հայ զինվորների թիվը կազմում էր շուրջ 2500 մարդ:*

*1722 թ. ամռանը հայկական կանոնավոր 12 հազարանոց զորաբանակը՝ Ավան հարյուրապետի և Եսայի Հասան-Ջալալյանի հրամանատարությամբ, դուրս եկավ Արցախից և շարժվեց վրացական 30-հազարանոց բանակին ընդառաջ: Հանդիպման վայր էր նշանակված Գանձակից ոչ հեռու գտնվող Չոլակ գյուղը: 1722 թ. սեպտեմբերի 22-ին նշանակված վայրում «մեծավ շուքով» տեղի ունեցավ հայ-վրացական բանակների հանդիպումը, որը անասելի ոգևորություն առաջացրեց երկու կողմերում: Միացյալ բանակի առջև ելույթներ ունեցան Վախթանգ թագավորն ու Եսայի Հասան-Ջալալյանը: Նշվեց, որ այստեղից պետք է շարժվեն Շամախի և սպասեն ռուսական բանակի ժամանելուն, որը պետք է տեղ հասներ հոկտեմբերի սկզբներին: Այնուհետև վրաց, հայկական և ռուսական միացյալ ուժերով սկսելու էին ազատագրական արշավանքը դեպի Երևան, որի*

*արդյունքում ազատագրվելու էր նաև ամբողջ Արևելյան Հայաստանը: Հայ ազատագրական շարժումը երբեք այնքան մոտ չէր եղել իր երազանքի իրականացմանը: Ազատագրական մեծ արշավանքին մնացել էին հաշված օրեր, սպասվում էր ազատարար մեծ Թագավորի գալուստը: Մինչդեռ իրադարձությունները զարգանում էին հայերի համար ոչ ցանկալի հունով:*

*Դեռևս 1722 թ. հուլիսին ռուսական 44-հազարանոց բանակը Պետրոս I-ի հրամանատարությամբ դուրս գալով Աստրախանից՝ շարժվեց հարավ: Օգոստոսի 23-ին ռուսները գրավեցին Դերբենդը: Նախատեսված էր, որ ռուսական բանակն այստեղից թեքվելու էր դեպի հարավ-արևմուտք և հասնելու էր Շամախի, որտեղ միանալու էր հայ-վրացական բանակին: Սակայն Դերբենդը գրավելուց հետո Պետրոս I-ը այստեղ թողնելով գեներալ Մ. Մատյուշկինի զորամասը, հոկտեմբերի 4-ին վերադարձավ Աստրախան: Մատյուշկինին հրամայված էր ռազմական հետագա գործողությունների ժամանակ գրավել միայն մերձծովյան շրջանները: Շամախի շարժվելու մասին որևէ հրահանգ չկար: Այսպիսով, չիրագործվեց հայ-վրացական և ռուսական զորքերի Շամախիում միավորվելու նախագիծը: Իսկ բանից անտեղյակ հայ-վրացական հրամանատարությունը Չոլակում դեռ սպասում էր բաղձալի պահին:*

*Հասած լուրերը մխիթարական չէին. լեզգիները փակել էին Շամախի տանող ճանապարհը, իսկ նոյեմբերին անսպասելիորեն իմացվեց, որ ռուսական բանակի նախատեսված արշավանքը ընդհատվել է, ցարը վերադարձել է Ռուսաստան: Որոշ ժամանակ անց մելիքներին ուղղած իր հատուկ դրության մեջ Պետրոսն այդ քայլը բացատրել է հետևյալ կերպ. 1722 թ. օգոստոսի 27-ին ուժեղ ալեկոծության հետևանքով ռուսական նավատորմը կորցրել է 12 նավ, մի քանի օր անց խորտակվել են նաև զենք, զինամթերք, պարեն ու ձիեր տեղափոխող 17 նավ: Այսպիսի կորուստներից հետո է ինքը որոշել է առժամանակ հետաձգել դեպի Շամախի նախատեսված արշավանքը:*

*Անկասկած, միայն այս կորուստները չէին, որ ստիպում էին Պետրոսին հրաժարվել Անդրկովկաս արշավելու մտքից, որը դրավելու իրական հնարավորություններ նա իրոք ուներ: Բանն*

*այն է, որ Անդրկովկաս արշավելու ուղղությամբ Ռուսաստանի գործուն և վճռական քայլերը Թուրքիային ստիպեցին դիմելու կտրուկ գործողությունների: Թուրքիան հասկացնել տվեց Ռուսաստանին, որ ինքը չի հանդուրժի դեպի Անդրկովկաս ռուսական բանակների արշավանքը և բացահայտորեն Ռուսաստանին սպառնում է պատերազմով: Թուրքիային ոգևորում էր նաև Ֆրանսիայի և Անգլիայի ակնհայտ թշնամական վերաբերմունքը Ռուսաստանի նկատմամբ: Այս պայմաններում, Հյուսիսային պատերազմից հետո, ներքաշվել մի նոր պատերազմի մեջ՝ Ռուսաստանը իրեն թույլ տալ չէր կարող: Նա առայժմ ստիպված էր բավարարվել մերձկասպյան շրջանների միացմամբ, որոնք կարող էին հենակետ դառնալ ապագա մեծ արշավանքի ժամանակ:*

*Այսպիսով, հայ-վրացական ապստամբական ուժերը 1722 թ. աշնան վերջերին ստիպված էին վերադառնալ իրենց տեղերը: Պետրոս I-ի պարսկական արշավանքը անկասկած կարևոր դեր խաղաց հայ ազատագրական շարժման հետագա ծավալման գործում, այն նպաստեց նաև հայ-վրացական ռազմական համագործակցության ստեղծմանն ու ամրապնդմանը:*

*Կասպից ծովի արևմտյան ափերին ռուսական տիրապետության հաստատումով, որը միջազգային իրավունքի հիման վրա ամրագրվեց Ս. Պետերբուրգի 1723 թ. սեպտեմբերի 12-ի ռուս-պարսկական պայմանագրով, Ռուսաստանը ավելի մոտեցավ Հայաստանին, ռուսական ներկայությունը դարձավ ավելի շոշափելի:*

*Հայ ազատագրական շարժման գործիչները, ապավինելով ռուսական ներկայությանը, զենքը վայր չդրեցին, այլ շարունակեցին հետագա պայքարը նախ՝ պարսկական տիրապետության, իսկ հետագայում նաև՝ թուրքական զավթողական արշավանքների դեմ:*

*Կարելի է ասել, որ հենց այդ ժամանակ էլ վերջնականապես ձևավորվեց հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը: Ուղղակի դժվար է հստակ պատասխանել, թե պարսկական տիրապետությունից Հայաստանի հնարավոր ազատագրման դեպքում արդյո՞ք Պետրոս I-ը կբավարարվեր*

*սուկ ազատարարի և բարեկամի բարոյական պարտականություններով, և ի վերջո Հայաստանը ձեռք կբերե՞ր իր երազած ազատագրությունը, թե նոր գրավված տարածքները, թեկուզ և ինքնավարության ինչ-ինչ նշույլներով, կմիավորվեին Ռուսաստանին: Պետրոս I-ը, տարբեր առիթներով չեշտում էր, թե իր նպատակն է Անդրկովկասում ստեղծել հայ-վրացական միացյալ թագավորություն՝ Վախթանգ VI-ի գահակալությամբ: Ցավոք, այս ծրագրի այլ հանգամանքներ հայտնի չեն: Իրադարձությունների հետագա ընթացքը թույլ չտվեց համոզվելու, թե որքան անկեղծ էին Պետրոս I-ի այս մտադրությունները և որքան իրական:*

***բ. Ազատագրական կռիվները Արցախում: Հայկական անկախ իշխանության ստեղծումը:*** *Պետրոս I-ի պարսկական ձախողված արշավանքից հետո ապստամբած հայերն ու վրացիները հայտնվեցին խիստ աննպաստ իրավիճակում: Անհրաժեշտ էր պարսից շահին պատասխան տալ իրենց հակապետական քայլերի համար: Շահ Թահմազ II-ը Վախթանգին մեղադրելով պետական դավաճանության մեջ՝ նրան գահընկեց արեց: Ռուսաստանի փորձերը՝ փրկել իր հովանավորյալին, անարդյունք եղան: Գահազուրկ Վախթանգը ստիպված էր փախչել Ռուսաստան: Այսպիսով հայերը զրկվեցին իրենց դաշնակցից և ստիպված էին միայնակ շարունակել պայքարը:*

*Արցախ վերադարձած հայկական զինական ուժերը ազատագրական կռիվների միջոցով երկրամասից դուրս քշեցին պարսկական վարչակազմին և զորամասերին: Փաստորեն, 1722 թ. վերջերին և 1723 թ. սկզբներին ամբողջ Արցախն ազատագրված էր պարսկական իշխանության մնացուկներից: Վերացան պարսկական վարչական ու հարկային համակարգերը, տեղական կառավարումն անցավ հայերի ձեռքը: Աստիճանաբար մտցվեցին կառավարման, հարկահավաքման միանդամայն նոր ձևեր: Ոչնչացվեցին հարկային բոլոր հին ցուցակները, ժողովուրդն ազատվեց դարեր ի վեր «սրբագործված» բռնությունների ու կամայականությունների համակարգից: Ցարժման առաջնորդ Եսայի Հասան-Ջալալյանը տեղի ունեցած երևույթները գնահատել է որպես հայոց ազգային հանգած իշխանության «նոր նո-*

*րոգում»: Արցախի հայկական իշխանության գործառույթներն իրականացնում էին տեղական մելիքական հին տոհմերի ներկայացուցիչները, որոնց գործունեությունը համակարգում էր Եսայի Հասան-Ջալալյանը:*

*Հատկապես մեծ հաջողություններ ձեռք բերվեցին զինված ուժերի ամրապնդման ուղղությամբ: Կազմակերպվեցին ռազմական ամրացված հինգ շրջաններ՝ սղնախներ: Դրանք էին՝ Դիզակի, Խաչենի, Ջրաբերդի, Շոշի և Գյուլիստանի: Յուրաքանչյուր սղնախ ուներ շուրջ 6 հազար զինվոր: Սղնախների զինված ուժերի ընդհանուր թիվը տատանվում էր 30–40 հազարի միջև: Հրամանատարներն էին Ավան, Սարգիս, Եսայի, Թարխան և այլ զորավարներ: Ընդհանուր զորահրամանատարն էր Ավան հարյուրապետը: Զինվածությունը բավարար էր, վառոդն ու հրազենը հիմնականում պատրաստում էին տեղում:*

*Արցախի զինական ուժերը հաջողությամբ հետ են մղում պարսկական պատժիչ զորաբանակների արշավանքները: Օրինակ՝ 1723 թ. հոկտեմբերին Հաղրութում տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ պարսկական 40-հազարանոց բանակը պարտություն կրեց և կորցնելով 2000 մարդ՝ հետ նահանջեց: Արցախի ինքնավար իշխանություններն ստիպված էին ռազմական ընդհարման մեջ մտնել դրսից եկած ու արդեն Արցախի որոշ շրջաններում հիմնավորված թուրք (ադրբեջանցի) ավատատերերի և ելուզակային ջոկատների հետ, որոնք, օգտվելով պարսկական կենտրոնական իշխանության թուլացումից, փորձում էին իրենց ձեռքը վերցնել Արցախի հարկահավաքությունը կամ զբաղվում էին հայկական գյուղերի թալանով: 1724 թ. սրանք ևս ջախջախիչ պարտություն կրեցին Ջրաբերդի և Գյուլիստանի զինված ուժերից և մինչև օսմանյան թուրքերի հայտնվելը, այլևս չէին համարձակվում պահանջներ ներկայացնել Արցախի մելիքներին: Այսպիսով, Արցախի հայկական իշխանությունը գնալով ավելի ու ավելի էր ամրապնդվում ու կայունանում:*

*Անշուշտ, հայ ազատագրական շարժումը շարունակում էր ապավինել Ռուսաստանի օգնության հույսին և այդ ակնկալությամբ էլ նոր խնդրագրեր էին ուղարկվում ցարական արքունիք: Սակայն Պետրոս I-ի անակնկալ մահից հետո (հունվար, 1725 թ.)*

*ռուսական քաղաքական ու ռազմական շրջանակներում թուլանում էր հետաքրքրությունը Անդրկովկասի նկատմամբ, որի արդյունքը եղան հայերին տրված անորոշ, խուսափողական պատասխանները և, ի վերջո, Անդրկովկասից հեռանալու միտումների առաջ գալը:*

***գ. Թուրքական արշավանքը Արևելյան Հայաստան: Երևանի և Արցախի հերոսամարտերը:** Պարսկաստանի թուլացումն ու մասնատումը, Ռուսաստանի անսքող հետաքրքրությունն Անդրկովկասի նկատմամբ իրենց վրա բևեռեցին Օսմանյան Թուրքիայի ուշադրությունը: Թուրքիան ուշի-ուշով հետևում էր տարածաշրջանում տեղի ունեցող իրադարձություններին և պատրաստվում էր Անդրկովկասն ու Ատրպատականը գրավելու իր հին ծրագրերի իրականացմանը:*

*1722 թ. վերջերին Էրզրումում կենտրոնացված թուրքական 100-հազարանոց բանակը պատրաստ էր ներխուժելու Անդրկովկաս: Այստեղ էին բախվում ռուսական և թուրքական շահերը և կողմերն աշխատում էին համակրանք փնտրել տեղական ժողովուրդների շրջանում: Հենց թուրքերի դրդումով էր, որ կովկասյան լեռնականները, մասնավորապես լեզգիները, սկսեցին ասպատակել Անդրկովկասը և հենակետեր ստեղծել թուրքական ռազմակալման համար: Իր հերթին, Ռուսաստանը չէր թուլացնում երկխոսությունն ու կապերը հայ և վրաց քաղաքական գործիչների հետ և ամրապնդվելով Կասպից ծովի ափերին՝ պատրաստվում էր ավելի վճռական քայլի դիմել՝ գրավել Անդրկովկասը:*

*Ռուսներին կանխելու նպատակով 1723 թ. գարնանը թուրքական բանակը ներխուժեց Անդրկովկասի սահմանները և սրընթաց շարժվեց դեպի Թիֆլիս, որը հունիսին առանց մարտերի հանձնվեց: Այնուհետև թուրքական բանակը ձեռնամուխ եղավ երկրամասի նվաճմանը: Աշնանը թուրքերը փորձեցին գրավել Գանձակը, որտեղից ուղիղ ճանապարհ էր սկսվում դեպի հայկական սղնախներ: Իրավիճակի այս կտրուկ փոփոխումը և վատթարացումը որոշակիացնում են հայ ազատագրական շարժման հետագա պայքարի ուղղվածությունը: Այժմ օրակարգի հարց է դառնում թուրքական ռազմակալման վտանգի*

*դեմ պայքարը, որն, անշուշտ, շատ ավելի բարդ էր ու դժվար և անպայման պահանջում էր Ռուսաստանի միջամտությունը:*

*Նոր իրադրությունը Ռուսաստանին ստիպում էր դիմել համարժեք քայլերի: Անհրաժեշտ էր ապահովել տեղական բնակչության, հատկապես հայերի հետ հաստատված լավ հարաբերությունները: Ահա այս նպատակն էր հետապնդում Պետրոս Մեծի անձնական ներկայացուցիչ Իվան Կարապետի (Հովհաննես Շիրվանյան) բանագնացությունը Հայաստան: Իվան Կարապետը Ս. Պետերբուրգում բնակվող մեծահարուստ վաճառական էր, որին անձամբ ճանաչում էր կայսրը, և պատահական չէ, որ նրան էր վստահվել այս հույժ կարևոր առաքելությունը: 1723 թ. հունիսի 3-ին ռազմական ու դիվանագիտական նշանավոր գործիչների ներկայությամբ ցարն ընդունում է նրան և հանձնում իր «Կայսերական ողորմածությունն ու ողջույնները Պարսկաստանում ապրող ազնիվ հայ ժողովրդին» խորագիրը կրող հրովարտակ-նամակը ու մի առանձին հուշագիր՝ ի պատասխան այն խնդրագրերի, որ իրեն էին ուղարկել Ավան, Սարգիս հարյուրապետերն ու Եսայի Հասան-Ջալալյանը: Կայսրը հայերին հուսադրում էր, որ ինքն անպայման օգնելու է նրանց, միայն թե չթուլացնեն իրենց դիմադրությունը, չկորցնեն հույսը և համբերեն այնքան, «մինչև որ մենք ի վիճակի կլինենք նրանց օգնության գնալու՝ հարկ եղած և հզոր միջոցներով»:*

*1724 թ. սկզբներին Իվան Կարապետն արդեն Արցախում էր: Պետրոս Մեծի հրովարտակը պարզորոշ վկայում է, որ Ռուսաստանը տվյալ պահին ի վիճակի չէր հայերին ցույց տալ ակնկալվող օգնությունը: Ինքը՝ ռուսաց կայսրն էր խորհուրդ տալիս, թե հայերը պետք է հանգիստ մնան իրենց տեղում, մինչև որ Ռուսաստանը հնարավորություն կունենա հոգալ նրանց ազատության մասին: Հրովարտակները թեև զուրկ էին որոշակիությունից, բայց գոհունակությամբ ընդունվեցին հայ ազատագրական շարժման գործիչների կողմից: Ցարական խոստումներով խանդավառ՝ նրանց մնում էր առայժմ ապավինել սեփական ուժերին և միաժամանակ շարունակել պայքարը թուրքերի դեմ:*

*Իվան Կարապետը մեծ ջանքեր թափեց Արցախում նկատվող վհատությունը փարատելու, կարգ ու կանոն հաստատելու*

*ուղղությամբ: Լայնախոհ և հեռատես այս գործիչը հետևողական աշխատանք կատարեց հայ ազատագրական շարժման ղեկավարներին հաշտեցնելու Գանձակի շահական վարչակազմի հետ: Նա մշակեց համագործակցության մի ծրագիր ընդդեմ թուրքերի, որով երեկվա հակառակորդները՝ հայերն ու պարսիկները, համախմբվեցին ընդհանուր թշնամու՝ թուրքերի դեմ: Նրա գործուն մասնակցությամբ 1724 թ. մարտի 24-ին Գանձակի մահմեդականների և սղնախների միջև կնքվեց փոխադարձ օգնության պայմանագիր: Նույն թվականի մայիսին Իվան Կարապետը Ավան հարյուրապետի երկու հազարանոց զորաջոկատով գնաց Սյունիք՝ տեղի ապստամբական ուժերին օգնելու համար: Նա փորձում էր միավորել հայկական ապստամբական բոլոր ուժերը, վերջ տալ երկպառակություններին, անջատողականությանը: Նրա խորհրդով ազատագրական շարժման գործիչները նոր համախոսական դիմումներ հղեցին Պետրոս ցարին՝ նորից հուսալով ու խնդրելով նրա հովանավորությունը: Պետրոս I-ը չուշացրեց իր պատասխանը, որտեղ պաշտոնապես հայտարարում էր. «Մենք հայ ժողովրդին վերցնում ենք մեր առանձնահատուկ կայսերական ողորմածության և պաշտպանության ներքո»:*

*Թեև Ռուսաստանը այսպիսի խոստումներ էր տալիս հայերին և հուսադրում նրանց, մյուս կողմից՝ առաջնորդվելով իր քաղաքական առաջնահերթ շահերով, շտապեց Թուրքիայի հետ բարելավել իր հարաբերությունները: 1724 թ. հունիսի 12-ին Կ. Պոլսում կնքվեց ռուս-թուրքական պայմանագիր, որով Թուրքիան ճանաչում էր Ռուսաստանի տիրապետությունը Կասպից ծովի առափնյա շրջաններում (Դերբենդից Մազանդարան), իսկ Ռուսաստանը ճանաչեց Թուրքիայի իրավունքները Հայաստանի, Վրաստանի, Ատրպատականի, Գանձակի և Անդրկովկասում Պարսկաստանին ենթակա մյուս տարածքների նկատմամբ: Հայ ազատագրական շարժման ղործիչները երկար ժամանակ անտեղյակ մնալով այս պայմանագրին՝ շարունակում էին հուսալ և սպասել Ռուսաստանի օգնությանը:*

*Ռուս-թուրքական պայմանագրի կնքումից անմիջապես հետո թուրքերն անցան լայնածավալ հարձակման: 1724 թ. հու-*

*նիսի վերջին նրանց 30-հազարանոց բանակը մտավ Արարատյան դաշտ և շարժվեց դեպի Երևան: Երևանի խանի զորքերը Եղվարդ գյուղի մոտ փորձեցին կասեցնել նրանց առաջխաղացումը, բայց պարտություն կրեցին և ամրացան քաղաքի միջնաբերդում: Թուրքերի համար անսպասելիորեն համառ դիմադրություն ցույց տվեց Կարբի գյուղի բնակչությունը: Թուրքական հրամանատարությունը ստիպված էր այստեղ թողնել զորքի մի մասը և հիմնական ուժերով շարժվել Երևանի վրա: Շուրջ 40 օր տևեց Կարբիի հերոսական պաշտպանությունը: Մի խումբ վատ զինված հայ գյուղացիներ կարողացան հետ մղել թուրքական կանոնավոր բանակի բազմաթիվ գրոհները: Ի վերջո, կարբեցիները դիմադրությունը դադարեցրին միայն այն բանից հետո, երբ թուրքերը խոստացան չմտնել գյուղ:*

*Թուրքական բանակն արդեն շրջապատել էր Երևանը: Քաղաքի պարսկական կայազորն ամրացել էր միջնաբերդում, իսկ բուն քաղաքի պաշտպանությունն իր վրա էր վերցրել հայ բնակչությունը: Ինքնապաշտպանական ուժերը, որ հաշվվում էին շուրջ 10 հազար մարդ, Հովհաննես Հունդիբեկյանի, Պողոս Քեչիբեկյանի և այլոց գլխավորությամբ երեք ամիս շարունակ հետ էին մղում թուրքական բանակի գրոհները: Արյունալի մարտեր տեղի ունեցան Կոնդի, Ձորագյուղի և Ս. Սարգիս եկեղեցու շրջակայքում: Երևանի մատույցներում թուրքերը կորցրին ավելի քան 20 հազար զինվոր:*

*Թուրքական հրամանատարությունը ստիպված էր նոր լրացուցիչ ուժեր մոտեցնել քաղաքին: 60-հազարանոց թուրքական բանակի դեմ կռվող հայկական փոքրաթիվ ջոկատներն ուժասպառ էին եղել, չէր բավականացնում զենքն ու զինամթերքը, մեծ էին մարդկային կորուստները: Թեև հայերը լի էին վճռականությամբ՝ շարունակելու ինքնապաշտպանական մարտերը, բայց բերդի պարսկական կայազորի հրամանատարությունը, հայերից գաղտնի, բանակցություններ սկսեց թուրքերի հետ: Սեպտեմբերի 22-ին պարսիկները Երևանի բերդը հանձնեցին թուրքերին, որոնք անարգել ներխուժեցին քաղաք: Հայերը չէին հանձնվում. մի քանի օր տևած փողոցային կատաղի մարտերից հետո միայն, երբ ընկան քաղաքի վերջին պաշտպանները, թուր-*

*քերը գրավեցին Երևանը:*

*Երևանի երկարատև պաշարումը, մարդկային մեծ կորուստները թուլացրին օսմանյան բանակների հարձակողական թափը: Թուրքերը հասկացան, որ հեշտությամբ չեն կարողանալու գրավել տարածաշրջանը: Այդ էր պատճառը, որ թուրքական բանակի հրամանատար Արիֆ Ահմեդ փաշան Ամենայն Հայոց կաթողիկոս Աստվածատուր Ա Համադանցուն ստիպեց նամակ գրել Եսայի Հասան-Ջալալյանին և պատվիրել, որ Արցախի հայերը զենքը վայր դնեն ու հանձնվեն:*

*Չնայած Ամենայն Հայոց կաթողիկոսի հորդորներին՝ արցախահայությունը որոշեց դիմել ինքնապաշտպանության: Գրավելով Լոռին, Ղազախը, Շամշադինը՝ թուրքերը ընկճեցին Գանձակի մեծաքանակ կայազորի դիմադրությունը ու մտան քաղաք: Այստեղից նրանք շարժվեցին դեպի Արցախ: 1725 թ. փետրվարին թուրքական առաջապահ 6-հազարանոց զորաջոկատը ներխուժեց Վարանդա և տեղավորվեց հայկական 33 գյուղերում: Տեղի սղնախի հրամանատարությունը որոշում կայացրեց գիշերային հանկարծակի հարձակումով ոչնչացնել թուրքական զորաջոկատը, որը և իրագործվեց լիովին. փրկվեցին քչերը: 1725-1726 թթ. ընթացքում թուրքերը չորս անգամ ևս հարձակվեցին Արցախի վրա և զգալի կորուստներով հետ նահանջեցին: 1726 թ. աշնանը կատաղի մարտեր տեղի ունեցան Քարագլուխ (Շոշ) ամրոցի համար, որտեղ թուրքերը կորցրին 800 զինվոր:*

*Անհավասար այս կռիվներում հայերը դեռևս հույս էին փայփայում, թե միգուցե ռուսները կգան օգնության: Ապավինելով այդ հույսին՝ տարակուսած Եսայի Հասան-Ջալալյանը խնդրագիր խնդրագրի հետևից էր ուղարկում ռուսական հրամանատարությանը: Սակայն իզուր. թուրքերի հետ 1724 թ. պայմանագրով կաշկանդված էր Ռուսաստանը: Զինական օգնության փոխարեն ռուսները Արցախի հայերին խորհուրդ էին տալիս դաղթել նորանվաճ մերձկասպյան շրջաններ: Հետևել այս խորհրդին՝ նշանակում էր լքել հայրենիքը, հրաժարվել փայփայված հույսերից: Ռուսական կողմնորոշում ունենալը չէր նշանակում լքել Հայաստանը և տեղափոխվել Ռուսաստան կամ այլուր:*

*Այսպիսի ազատագրական շարժումը հայտնվեց փակուղու*

*առջև: Դարձյալ անհրաժեշտ էր ելք փնտրել: Ռուսաստանի նման վերաբերմունքը ազատագրական շարժման ղեկավարությանը կանգնեցրեց երկընտրանքի առջև: Շարժման որոշ ղեկավարներ այլևս անիմաստ էին համարում հետագա դիմադրությունը: Առավել իրատես գործիչները (այդ թվում և ինքը՝ Եսայի Հասան-Ջալալյանը) առաջարկում էին բանակցություններ վարել թուրքերի հետ և երաշխիքներ ստանալուց հետո զենքը վայր դնել: Անշուշտ, Հասան-Ջալալյանի համար ծանր էր նման մի որոշում ընդունելը: Սակայն հարկավոր էր ճիշտ ու հաշվենկատ քայլերով, քիչ կորուստներով ելքը գտնել: Շատերը Հասան-Ջալալյանին մեղադրեցին դավաճանության մեջ և սղնախներում ծայր առան երկպառակություններ, որոնց դեմ այնքան պայքարել էին Իվան Կարապետը և ինքը՝ կաթողիկոսը:*

*Այսպիսի ճակատագրական պահին կաթողիկոսի անակնկալ մահը (1728 թ.) ավելի խորացրեց անմիաբանությունը ապստամբական ուժերի շրջանում: Ապստամբական շարքերը լքեց նաև նրա ականավոր ղեկավարներից մեկը՝ Ավան հարյուրապետը: 1728 թ., ռուսական հրամանատարությունից օգնություն ստանալու հույսով նա գնաց Բաքու, սակայն մերժում ստանալով՝ այլևս չվերադարձավ Արցախ: Իրեն ուղեկցող զորաջոկատով նա մտավ ռուսական ծառայության մեջ՝ համալրելով Հայկական էսկադրոնի շարքերը: Պարտվողական այս ճանապարհը բռնեցին նաև այլ զորաջոկատներ, որոնք աստիճանաբար դուրս եկան Արցախից և տեղափոխվեցին ռուսական տիրապետության սահմանները: Ռուսական հրամանատարությունը խրախուսում էր նրանց տեղափոխությունը և տեղաբաշխում սահմանամերձ ամրոցներում:*

*Ի հակառակ հաշտվողականների Գյուլիստանի և Ջրաբերդի սղնախները, լարելով վերջին ուժերը, շարունակում էին դիմադրել թուրքերին և անգամ նրանց ստիպեցին նահանջել Գանձակ: Ազատագրական պայքարի դիրքերում մինչև վերջ մնացին հատկապես Գյուլիստանի սղնախի զորականները, որոնք Աբրահամ սպարապետի հրամանատարությամբ 1729–1731 թթ. թուրքական զորքերի դեմ մղում էին վերջին ինքնապաշտպանական, անձնազոհ կռիվները: Բայց ի վերջո թուրքերին հաջողվեց ճնշել*

*նաև նրանց դիմադրությունը: Արցախի ազատագրական ապստամբությունը պարտություն կրեց: Այն զգալի հաջողությունը, որ ունեցան հայերը, դա հայկական ինքնավար իշխանության և հայկական զորքի ստեղծումն էր: Սակայն երբ պարզ դարձավ, որ ռուսական ուժերը չեն կարող նպաստել այդ հաջողությունների զարգացմանը, շարժումը աստիճանաբար մարեց:*

***դ. Ազատագրական կռիվները Սյունիքում: Հայկական անկախ իշխանության ստեղծումը:*** *XVIII դարի 20-ական թվականների սկզբներին ազատագրական շարժումներ են սկսվում նաև Սյունիքում: Նախապես հարկ է նշել, որ Սյունիքի և Արցախի միջև կային մի շարք էական տարբերություններ, որոնք իրենց կնիքը թողեցին ազատագրական պատերազմների ամբողջ ընթացքի վրա:*

*Ի տարբերություն Արցախի, որի բնակչությունը զուտ հայկական էր, Սյունիքում արդեն որոշ թիվ էին կազմում մահմեդականները, մասնավորապես՝ թուրք և քուրդ քոչվորները, որոնք վաղ գարնանից մինչև խոր աշուն իրենց անասունների հոտերով Կուրի հարթավայրային շրջաններից բարձրանալով՝ հաստատվում էին տեղի ալպյան արոտավայրերում: Ի տարբերություն Արցախի, որտեղ կազմավորվեց 40-հազարանոց հայկական կանոնավոր զորաբանակ, Սյունիքում այդպիսի ռազմական ուժ չկար: Այստեղ մելիքների առանձին փոքրաթիվ ջոկատները ցաքուցրիվ էին, ինվորականությունը համախմբված չէր ընդհանուր հրամանատարության ներքո: Եվ, վերջապես, ի տարբերություն Արցախի, որն ուներ պայքարը գլխավորող երկու առաջնորդներ՝ Եսայի Հասան-Ջալալյանը ու Ավան հարյուրապետը, Սյունիքում այդպիսի հեղինակավոր գործիչներ չկային, որ կարողանային շարժումը համախմբել և ժողովրդին տանել իրենց հետևից: Այս ամենը նշանակում էր, որ ազատագրական շարժման համար Սյունիքում պայմաններն անբարենպաստ էին և այն սկսելու համար պետք է հաղթահարվեին ավելի շատ խոչընդոտներ: Սյունիքի ազատագրական պայքարի գործիչները լավ էին ըմբռնում այդ դժվարությունները և հենց սկզբից համապատասխան միջոցներ էին փնտրում եղած խոչընդոտները հաղթահարելու համար:*

*Առաջին և կարևորագույն խնդիրը ազատագրական շարժման մյուս կենտրոնների հետ կապ հաստատելն էր, ինչպես, օրինակ՝ Արցախի և Վրաստանի հետ: Կապերի հաստատումն ինքնանպատակ չէր. անհրաժեշտ էր ազատագրական ճիգերը փոխհամաձայնեցնել և, եթե հնարավոր է, դրսից ռազմական օգնություն ստանալ: Ահա այս նպատակով է, որ 1722 թ. սկզբներին մեղրեցի Ստեփանոս Շահումյանը, Սյունիքի մելիքների և տանուտերերի հանձնարարությամբ, մեկնում է Թիֆլիս՝ Վրաստանի թագավոր Վախթանգ VI-ի հետ հանդիպելու: Վախթանգի հանձնարարությամբ Ստեփանոս Շահումյանի հետ բանակցություններ է վարում թագաժառանգ Շահնավազը: Այդ ժամանակ վրացական բանակում մեծ թվով հայ զինվորականներ կային: Հայերն աչքի էին ընկնում իրենց խիզախությամբ ու հայտնի էին որպես կարգապահ զինվորականներ: Նրանց մի մասը բնիկ վրաստանցիներ էին, քիչ չէին նաև Հայաստանի տարբեր շրջաններից Վրաստան տեղափոխվածները: Եվ ահա, Շահնավազը Ստեփանոս Շահումյանին ներկայացնում է նրանցից մեկին՝ Դավիթ Բեկին, որը լավագույնս կարող էր համախմբել Սյունիքի ազատագրական ուժերն ու գլխավորել պայքարը պարսիկների դեմ:*

*Դավիթ Բեկը Վախթանգ թագավորի մերձավոր զորականներից էր և նշանավոր էր վրացական բանակում իր հեղինակությամբ ու քաջագործություններով: Ենթադրելի է, որ նա ծագումով սյունեցի էր և պատահական չէր հենց նրան Սյունիք ուղարկելը: Վախթանգն այդքան պատասխանատու գործ կարող էր հանձնարարել միայն վստահելի ու գիտակ մարդու, ինչպիսին հանդիսանում էր Դավիթ Բեկը:*

*Իր մերձավորագույն զինակիցներից ստեղծելով 30 հոգիանոց ջոկատ, որի մեջ էին Բայանդուրը, Գորգին, Ավթանդիլը, Հովհաննեսը և ուրիշներ, Դավիթ Բեկը 1722 թ. վերջերին ժամանեց Սյունիք: Նա հաստատվեց Հաբանդ գավառի ամենամեծ ավանում՝ Շինուհայրում, և սկսեց վերակառուցել տեղի ավերված ամրոցը, որը դարձավ նրա առաջին ղորակայանը: Իմանալով Դավիթ Բեկի գալստյան մասին՝ Սյունիքի մելիքների ու տանուտերերի մեծ մասը եկավ Շինուհայր, ներկայացավ նրան և*

*պատրաստակամություն հայտնեց աջակցելու ապագա ապստամբության կազմակերպմանը: Առաջինն իրենց ջոկատներով եկան և ներկայացան Զավնդուրի Թորոս իշխանը, Գողթնի և Հին Ջուղայի տանուտերերը, Պապ և Պալի հարյուրապետերը, Մխիթար սպարապետը և ուրիշներ: Որոշ տատանումներից հետո նրան են միանում նաև Հալիձորի մելիք Փարսադանն ու Տեր-Ավետիսը: Կարճ ժամանակամիջոցում նրա շուրջն են հավաքվում մոտ 2000 մարտիկներ, ստեղծվում է կանոնավոր ու կարգապահ բանակ: Դավիթ Բեկն իր մոտ է հրավիրում նաև Սյունիքի հոգևոր առաջնորդ, Տաթևի վանքի վանահայր Հովակիմ եպիսկոպոսին, որը հավաստում է, թե հոգևոր դասն ամբողջությամբ պաշտպանում է ապստամբության գաղափարը և աջակից է լինելու շարժմանը:*

*Ինչպես նշեցինք, Սյունիքի պայմանները բավականին բարդ էին, երկրամասի բնակչության մեջ զգալի տոկոս էին կազմում քոչվոր թուրք և քուրդ ցեղերը, որոնք կատարյալ պատուհաս էին հայ բնակչության համար և խանգարում էին ապստամբության կազմակերպմանը: Ահա թե ինչու Դավիթ Բեկն իր առաջին գործողություններն սկսեց հենց այս ցեղերի դեմ: Համառ և արյունալի կռիվներից հետո նա ջախջախեց կարաչորլու և ջիվանշիր քոչվորական ցեղախմբերին: Հատկապես տպավորիչ էր Ուչթափա սարահարթում ջիվանշիր 32 ցեղերի միացյալ ուժերի դեմ տարած հաղթանակը, երբ Դավիթ Բեկն ընդամենը 400 ընտիր ռազմիկներով պարտության մատնեց հակառակորդի մի քանի հազարանոց հրոսակախմբին. վերացվեց ապստամբական ուժերի միավորմանն ու համագործակցությանը մեծապես խանգարող ներքին խոչընդոտը:*

*Այս առաջին հաղթանակը նպաստեց Դավիթ Բեկի հեղինակության բարձրացմանը, նրա փառքի տարածմանը: Շատ հայ մելիքներ եկան Շինուհայր և մտան նրա դրոշի ներքո: Կային նաև տատանվողներ, կրավորական դիրքորոշում որդեգրածներ և ուզզակի դավաճաններ: Զորավարն անողոքաբար պատժում էր անջատողականներին, դավաճաններին և ուրացողներին: Այսպես՝ մելիք Բաղիրը, որ որդիների հետ մահմեդականություն էր ընդունել, ամրանալով Տաթևում՝ փորձում էր Թիկունքից*

*հարվածել ապստամբներին: Երկօրյա մարտերից հետո Դավիթ Բեկը գրավում է Տաթևը և մահվան դատապարտում ուրացող մելիքին, իսկ նրա գույքը բռնագրավելով՝ բաժանում բնակչությանն ու զինվորներին: Նա մահվան է դատապարտում Երիցվանիկի (Արծվանիկ) մահմեդականացած մելիք Ֆրանղյուլին և էլի մի քանի ուրիշ դավաճանների: Անպատիժ չէին մնում այն զինակիցները, որոնք զանցանքներ էին թույլ տալիս կամ չէին ենթարկվում կարգապահությանը: Վախկոտություն և խուճապ տարածելու համար զորավարը հրամայում է մահապատժի ենթարկել իր մտերիմ Պապին, կարճատև կալանքի ենթարկում ազդեցիկ Տեր-Ավետիսին, անգամ՝ Մխիթար սպարապետին: Նման քայլերից հետո Սյունիքում հաստատվում է ամուր կարգ ու կանոն: Ստեղծվում է մարտունակ և օրինապահ բանակ:*

*Այնուհետև Դավիթ Բեկը լայնածավալ պայքար է սկսում ավելի կազմակերպված ու վտանգավոր ուժերի՝ պարսկական տեղական և հարևան խաների, տարբեր կարգի ավատատերերի ու բեկերի դեմ: Ազատագրական պատերազմի առաջին մեծ հաղթանակը հայերը ձեռք բերեցին 1723 թ. Ջավնգուրի ճակատամարտում, երբ գիշերային հանգուցն հարձակումով ջախջախիչ պարտության մատնեցին Բարկուշատի և Ղարադաղի խաների 18-հազարանոց միացյալ բանակը: Դավիթ Բեկը պատերազմեց նաև Կապանի, Օրդուբադի և Նախիջևանի խաների դեմ: Տպավորիչ էր հատկապես Մխիթար սպարապետի և Տեր-Ավետիսի զորամասերի կողմից Ջեյվա անառիկ ամրոցի գրավումը, որի ժամանակ հակառակորդը կորցրեց 4 հազար զինվոր: Մեկ տարի անց, 1724 թ. մարտի 29-ին, Դավիթ Բեկը պաշարում է ռազմական կարևոր նշանակություն ունեցող Որոտնա բերդը և չորսօրյա արյունալի մարտերից հետո գրավում այն:*

*Ապստամբական ուժերի հաջողությունները պարսից խաներին ստիպում են վերջ տալ ներքին երկպառակություններին և իրենց ուժերը միավորել Դավիթ Բեկի դեմ: Նրանց է միանում նաև Արաքսի մյուս ափին գտնվող Ղարադաղի խանը: Իր հերթին պարսից Թահմազ II շահը ապստամբների դեմ է ուղարկում կանոնավոր բանակի մի քանի զորամասեր՝ հրահանգելով «միացյալ ուժերով հայերին վանել ու ոչնչացնել»:*

*Սյունիքի համար այս օրհասական պահին՝ 1724 թ. մայիսին, Արցախից օգնական ուժեր են գալիս Իվան Կարապետի և Ավան Հարյուրապետի հրամանատարությամբ: Դա հայ ազատագրական ուժերի համագործակցության հիանալի օրինակ էր, որը բերելու էր փայլուն հաղթանակներ: Անհրաժեշտ էր շարունակել ու խորացնել հայոց անկախության այս երկու պատվարների՝ Արցախի և Սյունիքի հետագա համագործակցությունը, որը կարող էր ավելի նշանակալից արդյունքների հանգել:*

*Սյունիքի ազատագրական վերջին մարտերն ընդդեմ պարսիկների տեղի ունեցան 1725 թ. Գողթնում և Մեղրիում: Ականատես պատմիչի վկայությամբ՝ պարսիկներն այստեղ տալով հազարավոր սպանվածներ՝ հեռանում են Արաքսի մյուս ափը: Անշուշտ եղան նաև ցավալի պարտություններ և անհաջողություններ, ինչպես, օրինակ, Սիսիանի և Եղվարդի ճակատամարտերի ժամանակ, բայց դրանք չկարողացան կասեցնել հայկական իշխանության հետագա ամրապնդման գործընթացը: Ազատագրական քառամյա պայքարի արդյունքում ամբողջ Սյունիքն ու մերձակա մի քանի շրջաններ ազատագրվեցին:*

*Այս հաղթանակներից հետո ազատագրված Սյունիքում Դավիթ Բեկը ստեղծում է անկախ Հայկական իշխանություն: Բոլոր մելիքներն ու տանուտերերը անվերապահորեն ենթարկվում են նրա իշխանությանը և կատարում իրենց պարտավորությունները: Հետաքրքիր է, որ ժառանգական իշխանություն ունեցող մելիքական շատ տների ներկայացուցիչներ ներկայանում էին Դավիթ Բեկին և նա հաստատում էր նրանց իրենց նախկին իրավունքները: Ակներև է, որ Սյունիքի մելիքները նրան ճանաչում էին գերագահ և ընդունում նրա տիրապետությունը՝ լեռնաշխարհում հաստատված անկախ իշխանության ողջ տարածքում:*

*Զորապետի հրամանով ամրացվում են բերդերն ու ամրոցները, կառուցվում են նորերը, որոնցում հաստատվում են բերդապահ կայազորներ: Այսպես, Շինուհայրն ուներ 550, Զավնդուրը՝ 2000, Կալերը՝ 700, Մեղրին՝ 400, Սիսիանը՝ 500, Տաթևը՝ 400 զինվոր ունեցող կայազորներ: Իշխանությունում զինվորների ընդհանուր թիվը հասնում էր մոտ 7 հազարի: Զորաբանակների*

*հրամանատարներ էին նշանակվել ինչպես Դավիթ Բեկի հետ Վրաստանից ժամանած Ավթանդիլը, Գորգին, այնպես էլ բնիկ մելիքներն ու տանուտերերը՝ Տեր-Ավետիսը, Թորոսը, Նուբարը, Ադամը, Վարդանը և ուրիշներ: Զորքերի հրամանատար (սպարապետ) է նշանակվում Մխիթարը: Ստեղծվում է ռազմական խորհուրդ և չտար: Զորամասերն ունեին իրենց մարտական դրոշները: Փաստորեն, Արցախի օրինակով, Դավիթ Բեկը Սյունիքում կազմակերպում է սղնախ՝ այն դարձնելով հզոր ու անառիկ ամրացված երկրամաս: 1724 թ. հայկական նորաստեղծ իշխանության կենտրոնատեղին է դառնում Կապանի Հալիձոր բերդը, որտեղ կառուցվում են լրացուցիչ պաշտպանական բնագծեր ու նոր աշտարակներ, ամբարվում են մեծ թվով զենք, զինամթերք, պարեն:*

*Այսպիսով, 1722-1725 թթ. ընթացքում, համառ ու արյունալի կռիվներից հետո, Դավիթ Բեկին հաջողվեց երկրամասը ազատագրել քոչվորներից, պարսկական վարչակազմից, հակահարված տալ խանական միացյալ ուժերին և Սյունիքում ստեղծել Հայկական անկախ իշխանություն: Պայմաններ ստեղծվեցին համագործակցելու հայկական մյուս անկախ իշխանության՝ Արցախի հետ և միասնական ուժերով կերտել դարեր առաջ կործանված հայկական պետականությունը: Անշուշտ, Դավիթ Բեկն ու իր զինակիցները վերջնական հաղթանակի հույսը կապում էին Ռուսաստանից սպասվելիք օգնության հետ, որով նրանց հուսադրում էր Իվան Կարապետը: Բայց հետագա իրադարձությունները այլ ընթացք ստացան:*

***ե. Թուրքական արշավանքը Սյունիք: Հայկական իշխանության գոյամարտը:*** *Սյունիքում պարսկական տիրապետության թոթափման և հայկական անկախ իշխանության ստեղծման ժամանակ, ինչպես արդեն ասվել է, Օսմանյան Թուրքիան սկսել էր Անդրկովկասի ռազմակալման իր ծրագրի իրականացումը: Թուրքերը գրավել էին Թիֆլիսը, Երևանը, Գանձակը և ձգտում էին ներխուժել Արցախ ու Սյունիք: Առաջին անգամ նրանք փորձեցին Սյունիք ներխուժել դեռևս 1725 թ. գարնանը, բայց մեծ թվով զոհեր տալով՝ հետ շպրտվեցին: 1726 թ. ընթացքում թուրքերը, այնուամենայնիվ, կարողացան աստիճանաբար հաս-*

*տատվել երկրամասի հարավից անցնող առևտրական մայրուղու երկայնքով և, ռազմակալման ենթարկելով Նախիջևանը, Օրդուբադը, Ագուլիսը, Մեղրին, թափանցել Սյունիքի ներքին գավառները: Տեղացի թուրքերը և պարսից խաները աջակցում էին նրանց:*

*Հայկական իշխանությունը՝ չորս կողմերից շրջապատված, օրհասական կռիվ սկսեց մի քանի անգամ թվական գերակշռություն ունեցող նվաճողների դեմ: Հայերն ունեցան տարածքային և ռազմական նկատելի կորուստներ: Միաժամանակ սկսեց ջլատվել Սյունաց զինվորականության միասնությունը: Ապստամբական ուժերի շարքերում նկատվեցին վհատության և հուսալքության դեպքեր: Նման պայմաններում, Մխիթար սպարապետի նախաձեռնությամբ 1726 թ. մարտի 24-ին 8 մելիքների և հարյուրապետների ստորագրությամբ մի խնդրագիր է ուղարկվում ռուսական կառավարությանը, որտեղ նշված էր. «Մնացել ենք չորս կողմերից շրջապատված բերդի մեջ, ինչպես թռչունը՝ վանդակի, աղաչում ենք Ձեզ, հանուն Քրիստոսի սիրո, շուտափույթ օգնության հասնել և փրկել մեզ»: Սակայն, ինչպես նախորդ աղերսագրերը, սա ևս մնաց անպատասխան, քանի որ Ռուսաստանը: 1724 թ. Թուրքիայի հետ կնքված պայմանագրի հետևանքով, ի վիճակի չէր միջամտելու: Ուստի մնում էր ապավինել միայն սեփական ուժերին:*

*1727 թ. փետրվարին թուրքական հսկայական բանակը լայնածավալ գործողություններ սկսեց Հայկական իշխանության դեմ: Հայկական զինված ուժերը ծանր կորուստներ կրելով, արյունալի մարտերով հետ էին նահանջում: Նրանք ամրացան իրենց վերջին հենակետ Հալիձորում: Թուրքական զորաբանակները, որոնց միացան Դավիթ Բեկի կողմից ոչ վաղ անցյալում պարտություն կրած Բարկուշատի և Ղարադաղի խաների, կարաչորլու քուրդ քոչվորների, տեղական թուրք և քուրդ մյուս ավատատերերի բազմահազար զորքերը, 1727 թ. փետրվարի 26-ին շրջապատեցին Հալիձորը: Վեց օր շարունակ թուրքերը կատաղի գրոհներով փորձում էին գրավել ամրոցը: Շնորհիվ բերդի անառիկության նրա պաշտպանները քիչ կորուստներ ունեցան, ինչպես գրում է ականատեսը. «օրական մեկ կամ*

*երկու հոգի, իսկ հակառակորդի կողմից երկու հարյուր, երբեմն երեք կամ չորս հարյուր զոհ էր լինում»: Պաշարման յոթներորդ օրը՝ մարտի 4-ի լուսադեմին, թուրքերը պարսպակործան 26 մեքենաների ու սանդուղքների օգնությամբ երեք կողմից բուռն գրոհների դիմելով՝ տեղ-տեղ բարձրացան պարիսպների վրա: Թեև պաշտպանները կարողացան հետ շպրտել այս գրոհը, սակայն վիճակը գնալով օրհասական էր դառնում: Նման մեկ-երկու գրոհից հետո անհնարին կդառնար հետագա դիմադրությունը:*

*Օրվա երկրորդ կեսին Դավիթ Բեկը հանդուգն ու անսպասելի որոշում ընդունեց. դուրս գալ շրջապատված ամրոցից և հանկարծակի հարձակումով հակառակորդին ստիպել հետ նահանջել: Հակահարձակումը գլխավորում էին Մխիթար սպարապետն ու Տեր-Ավետիսը: Դիմելով զինվորներին՝ նրանք հորդորում էին. «Արիացե՛ք, մի՛ երկնչեք, հետևեցե՛ք մեզ, եթե հասել է մեր վախճանը. քաջաբար մեռնենք, որովհետև մեզ համար ավելի լավ է արիությամբ պարիսպներից դուրս մեռնել, քան այստեղ, մեր աչքերի առջև տեսնել մեր ընտանիքների ու բարեկամների մահը և այլ դժնդակություններ»:*

*Շփոթահար ու հանկարծակիի եկած հակառակորդը, չդիմանալով հայ զինվորների հարձակման թափին, ընկրկեց, ապա սկսեց խուճապահար նահանջել և ջախջախիչ պարտություն կրեց: Հալիձորի ճակատամարտում թուրքերը կորցրեցին 13 հազար զինվոր, հայերի ձեռքն ընկան 143 մարտական դրոշներ, հսկայական ռազմավար: Կրնկակոխ հետապնդելով սարսափահար փախչող թշնամուն՝ հայկական ուժերն սկսեցին Սյունիքն ազատագրել օսմանյան զորքերից ու շարժվել դեպի Գողթն:*

*Այս փայլուն հաղթանակը նոր ուժ և եռանդ հաղորդեց ազատագրական շարժմանը: Վհատված, կրավորական կեցվածք ընդունած շատ մելիքներ դարձյալ վերադարձան իրենց զորավարի մոտ: Երկրորդ տպավորիչ հաղթանակը թուրքերի դեմ հայերը շահեցին Մեղրիի ճակատամարտում: Մխիթար սպարապետի և Տեր-Ավետիսի զորաջոկատները ապստամբ մեղրեցիների օգնությամբ անսպասելիորեն ներխուժելով Մեղրու բերդ՝ հանկարծակիի եկած թուրքերին ստիպեցին նահանջել: Հայերը թուրքերին քշեցին դեպի Արաքսի կիրճը, որի մյուս կողմում*

*դարանակալել էին հայկական այլ զորաջոկատներ: Թուրքերն ընկան թակարդը: Երկու կողմից առնելով կրակի տակ՝ հայերը նրանց ստիպեցին անցնել Արաքսը: Գետանցի ժամանակ շատ թուրքեր խեղդվեցին գետի վարար ջրերում: Ռազմավարից բացի հաղթողների ձեռքն էին ընկել Սյունիքի 32 հազար հարկաթղթերը, որոնք անմիջապես այրվեցին: Հակառակորդը պարտություն կրեց նաև Բեխ գյուղում, Օրդուբադի մոտ և այլուր: Փաստորեն ամբողջ Սյունիքն ազատագրված էր, իսկ Հայկական անկախ իշխանությունը՝ վերականգնված:*

*Թուրքերի դեմ տարած հայերի այս փայլուն հաղթանակները մեծ տպավորություն թողեցին պարսկական քաղաքական շրջանակներում: Թուրքերի կողմից ջախջախված Թահմազ II շահն ու նրան հավատարիմ մնացած խաները փոխում են իրենց թշնամական, անհանդուրժող վերաբերմունքը հայերի նկատմամբ: Ինքը՝ Դավիթ Բեկը, ցուցաբերելով դիվանագիտական ճկունություն, շրջահայացություն և նոր քաղաքական պայմանների համեմատ նոր կողմնորոշման իրատեսություն, որոշում է համագործակցել պարսկական իշխանությունների հետ՝ լավ հասկանալով, որ ռուսական օգնությունը տվյալ պահին անհնարին է, իսկ ռուսների խոստումները՝ ուղղակի քաղաքական խաղ: Դավիթ Բեկն այժմ փորձում է ստեղծել հայ-պարսկական միացյալ ճակատ, ընդդեմ ընդհանուր թշնամու՝ թուրքերի: Շուտով Մազանդարանում ապաստանած պարսից Թահմազ շահը Դավիթ Բեկին հղում է «Քաջ Դավիթ Բեկին և Հայոց քաջարի զորականներին» ուղերձը, նաև ուղարկում է ազնվացեղ նժույգներ ու թանկարժեք նվերներ: Շահը դրվատում է նրանց՝ թուրքերի դեմ տարած զարմանալի հաղթանակների համար և ի նշան դնահատման հրամայում է. «Եվ ահա այսօր քեզ կարգեցի իշխան և գլուխ մեր բոլոր խաների, որ այդ կողմերում են, և Կապանի երկիրը, որ վերցրիր քաջությամբ, քեզ լինի»: Փաստորեն շահը Դավիթ Բեկին նշանակում է տարածաշրջանի (Կապան, Ղարադաղ, Բարկուշատ, Նախիջևան և այլն) կուսակալ և այստեղ գտնվող պարսկական զորքերի գլխավոր հրամանատար: Հատկապես տպավորիչ էր այն, որ Դավիթ Բեկին իրավունք էր տրվում հատելու սեփական դրամ, որն, անկասած,*

*ինքնավար իշխանության կարևորագույն խորհրդանիշներից մեկն էր:*

*Այսպիսով, Սյունիքի ազատագրական պատերազմներն աննախընթաց արդյունքի հանգեցին: Հայկական իշխանության անկախությունը ճանաչվեց Պարսկաստանի կենտրոնական ղեկավարության կողմից, որը երաշխիք էր նրա հետագա ամրապնդման ու զարգացման:*

*Բայց այս բախտորոշ պահին Դավիթ Բեկը ծանր հիվանդանում է և 1728 թ. կեսերին մահանում Հալիձորում: Անփոխարինելի կորստից ընկճված՝ զորականներն իրենց հրամանատար են ընտրում Մխիթար սպարապետին: Մխիթարը ուժեղ անհատականություն էր, մասնակցել էր Դավիթ Բեկի բոլոր նշանավոր ճակատամարտերին, աչքի ընկել ռազմավարական հմտությամբ և հերոսական խիզախումներով: Հավատարիմ ազատագրական շարժման մեծ ղեկավարի թողած վեհ ավանդներին՝ Մխիթար սպարապետը հաջողությամբ շարունակեց պայքարը թուրքական նվաճողների դեմ: Սակայն գնալով ուժեղանում էիններհակությունններն ապստամբական շարժման ղեկավարների միջև: Տեր-Ավետիսն ու նրան հետևող մյուս զորականները այլևս չհավատալով վերջնական հաղթանակին և համոզվելով, որ ռուսական օգնությունը հնարավոր չէ, հուսալքվեցին և այլ ելք չգտնելով՝ որոշեցին բանակցել թուրքերի հետ: Այդ ժամանակ արդեն սկսվել էր թուրքական նոր արշավանքը, և նրանք երկրորդ անգամ պաշարել էին Հալիձորը: Մխիթարը չկարողացավ համոզել զինակիցներին շարունակելու պայքարը: Մնալով գրեթե մենակ՝ նա իր փոքրաթիվ կողմնակիցներով մի գիշեր հեռացավ պաշարված ամրոցից: Թեև Տեր-Ավետիսը նախապես երաշխիքներ էր ստացել թուրք փաշայից, որ Հալիձորը հանձնելու դեպքում նրա բնակիչները չեն տուժելու, սակայն երդմնազանց թուրքը հրամայում է կոտորել բերդում եղած բոլոր տղամարդկանց, իսկ կանանց ու երեխաներին՝ դերի տանել: Հալիձորը հիմնահատակ ավերվում է: Այս դեպքերը տեղի են ունենում 1729 թվականի սկզբներին: Տեղի ունեցածից ցնցված՝ Տեր-Ավետիսը հեռանում է Հայաստանից և գնում Երուսաղեմ՝ ապաշխարելու:*

*Իսկ աննկուն ու եռանդով լի սպարապետը մոտ երկու տարի*

*շարունակում է պայքարը թուրք նվաճողների դեմ: Նրան հաջողվում է հավաքել հայկական ցրված ուժերը և անգամ հասնել հաջողությունների: Մխիթարի դրոշի ներքո համախմբված հայկական զորքը ազատագրում է բազմաթիվ բնակավայրեր, տանում փայլուն հաղթանակներ: 1730 թ. սպարապետը թուրքերին ծանր պարտության է մատնում Օրդուբադի մոտ և մեծ ռազմավարով վերադառնում Սյունիք՝ Խնձորեսկի բերդում միաժամանակ հանգիստ առնելու մտադրությամբ: Սակայն Մխիթարի ուղեգիծը չպաշտպանող խնձորեսկցի մի խումբ դավադիրներ, վախենալով, որ իրենց ավանը ևս կարող է արժանանալ Հալիձորի ճակատագրին, դավաճանաբար սպանում են սպարապետին: Թավրիզի թուրք փաշան, որի մոտ էին ուղարկել Մխիթարի կտրած գլուխը, հրամայում է գլխատել հայոց սպարապետին սպանողներին:*

*Մխիթարի սպանությունից հետո հայ ապստամբական ուժերը ընկը վայր են դնում և աստիճանաբար ցրվում: Նրանց մի մասը, ռուսների հրավերով, տեղափոխվում է ռուսական տիրապետության սահմանները: Չկար մեկը, որ շարունակեր Դավիթ Բեկի գործը:*

*Թեև ապստամբությունը պարտություն կրեց, բայց Սյունիքի հայության առանձին զինված ջոկատներ, ապավինած լեռնային անմատչելի վայրերին, մինչև 30-ական թվականների կեսերը դեռ շարունակում էին պարտիզանական պայքարը, մինչև որ պարսից Նադիր խանը, ի վերջո, ջախջախեց թուրքերին և նրանց դուրս քշեց Ատրպատականից ու Անդրկովկասից:*

*XVIII դարի 20-ական թվականների Արցախի և Սյունիքի ազատագրական պատերազմները հայ ազատագրական շարժման ամենանշանակալից իրագործումներից են: Դարեր շարունակ ազգային անկախությունից զրկված հայերն առաջին անգամ փորձեցին զենքի միջոցով հասնել իրենց ազատությանը: Այդ փորձը պսակվեց աննախադեպ հաջողությամբ. ձևավորվեցին, ստեղծվեցին Արցախի և Սյունիքի հայկական անկախ իշխանությունները: Սակայն, չնայած տարած հաղթանակներին և ունեցած հաջողություններին, միայնակ, զրկված դաշնակիցներից՝ այդ իշխանությունները չկարողացան շարունակել հետագա*

*պայքարը և տեղի տվեցին Օսմանյան կայսրության ռազմական ահռելի ուժի առջև: Հայերի վերջնական ազատագրումը կարող էր տեղի ունենալ միմիայն ռուսական կողմի ռազմական գործուն միջամտության շնորհիվ, որը այդ ժամանակ չեղավ: Հայաստանի ազատագրության խնդիրը անորոշ ժամանակով դարձյալ հետաձգվեց:*

## 3. ԱՐՑԱԽԻ ԿԻՍԱՆԿԱԽ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ XVIII ԴԱՐԻ 30-40-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

***ա. Նադիր շահը և հայերը: Խամսայի մելիքությունների ստեղծումը:*** *XVIII դարի 20-ական թվականների Արցախի հայության ազատագրական կռիվներն ավարտվեցին պարտությամբ: Թուրք նվաճողները մեծ դաժանությամբ ճնշելով հայ զինվորականության դիմադրությունը՝ իրենց տիրապետությունը հաստատեցին երկրամասում: Բայց լեռնաշխարհի որոշ վայրերում, հատկապես Գյուլիստանում, ապստամբները զենքը վայր չդրեցին և շարունակում էին անհավասար պայքարը: 1730-1731 թթ. թուրքական սուլթանի հրամանով Գանձակի Իբրահիմ փաշան Բայազետի, Երևանի, Գանձակի, Շիրվանի, Շաքիի և Դաղստանի թուրքական միացյալ բանակներով «սրբազան պատերազմ» էր մղում Աբրահամ սպարապետի (ինչպես իրենք էին ասում՝ «գյավուր Աբրահամի») գլխավորած Գյուլիստանի հայկական զորամասերի դեմ: Սակայն թուրքերը չկարողացան ընկճել հայերի դիմադրությունը: Ինչպես Սյունիքի, այնպես էլ Արցախի լեռնային անմատչելի վայրերում շարունակվում էին հայերի ազատագրական կռիվները:*

*Նման պայմաններում հասկանալի է դառնում, թե ինչու XVIII դարի 20-ական թվականների վերջերին և 30-ական թվականների սկզբներին Պարսկաստանում սկսված ու լայն ծավալ ընդունած հակաթուրքական ազատագրական պայքարի մեջ պետք է միավորվեին բոլոր այն ուժերը, որոնք մարտնչում էին թուրքերի դեմ: Մանավանդ Պարսկաստանում այդ շարժման գլուխ էր կանգնած այնպիսի լայնախոհ, հեռատես ռազմական*

*գործիչ, ինչպիսին էր Նադիր խանը՝ ապագա Նադիր շահը:*

*Նադիր շահը (1736–1747) Պարսկաստանի պատմության ամենաինքնատիպ ու ականավոր պետական գործիչներից էր: Նա եղել էր հասարակ զինվոր և իր աշխատասիրության ու տաղանդի, համառ կամքի ու խիզախության շնորհիվ բարձրանալով ծառայողական աստիճաններով՝ դարձել էր զորավար: Նա երիտասարդ տարիներից մասնակցել էր Պարսկաստանում իրենց տիրապետությունը հաստատած աֆղանների դեմ մղված ազատագրական պատերազմներին, ապա ծառայության էր անցել Թահմազ II շահի մոտ, նշանակվել բանակի գլխավոր հրամանատար: Նադիրը հաղթել էր աֆղաններին, ուզբեկներին, թուրքմեններին, քրդերին, լեզգիներին, պարսկական ու ադրբեջանական կենտրոնախույս խաներին, հաջողությամբ կռիվներ էր մղել նաև թուրք նվաճողների դեմ: Հատկապես նա բազմաթիվ փայլուն հաղթանակներ էր տարել 1730–1736 թթ. թուրք-պարսկական պատերազմի ժամանակ: 1735 թ. հունիսին Եղվարդի վճռական ճակատամարտում Նադիրը գլխովին ջախջախել էր թուրքերին, որոնք ստիպված հրաժարվել էին Ատրպատականից, Անդրկովկասից ու Դաղստանից: Մինչ այդ՝ 1732 թ., նա ռուսներին ստիպել էր հեռանալ մերձկասպյան նահանգներից, որ այնքան զոհողությունների ու ջանքերի գնով ձեռք էր բերել Պետրոս I-ը, և որն այնքան մեծ հույսեր էր ներշնչել հայ ազատագրական շարժման գործիչներին:*

*1736 թ. Նադիրը գահընկեց է անում Աբբաս III-ին և իրեն հռչակում Պարսկաստանի շահ: Նվաճողական պատերազմներ վարելով՝ նա գրավում է Բուխարան, Աֆղանստանը, Հնդկաստանը և ստեղծում մի հզոր աշխարհակալ պետություն: Իր ռազմական գործունեության ընթացքում Նադիրը, բնականաբար, չէր կարող անուշադրության մատնել հայ զինական ուժերը, որոնք տարիներ շարունակ միայնակ հերոսական պայքար էին մղում բազմաքանակ թուրքական բանակների դեմ: Շահը, որ խորունկ ու ճկուն քաղաքագետ էր, վեր էր կանգնած կրոնական սահմանափակվածությունից: Թուրքիայի դեմ պայքարի հենց սկզբում նա հասկացավ, որ ողջ Անդրկովկասում հայերը միակ իրական ու կարող ուժն են, որ դիմագրավում են իր հակառա-*

*կողմին: Որպես հակաթուրքական ուժ՝ հայերը փաստորեն հանդես եկան որպես Նադիրի դաշնակիցներ: Ահա թե ինչու սա աշխատում էր սիրաշահել հայերին: Նրա խորհրդով էր, որ շահ Թահմազը ճանաչել էր Դավիթ Բեկի գլխավորած Սյունիքի անկախ հայկական իշխանությունը, Արցախի ազատագրական շարժման գործիչներից մի քանիսին՝ Ավան հարյուրապետին և այլոց, շնորհել էր խանի պատվատիտղոս: Նադիրն աշխատում էր հայերին ընդգրկել հակաթուրքական միասնական ճակատի մեջ: Այդպիսի մտադրություն ունեին նաև հայ որոշ գործիչներ: Ժամանակին այդպիսի մտադրություն էր ունեցել նաև Դավիթ Բեկը: Թուրքական ընդհանուր սպառնալիքը երկու կողմին էլ ստիպում էր՝ անտեսել տարաձայնությունները, ատելությունն ու անհանդուրժողականությունը և հանդես գալ միասնական ուժերով: Այս պատճառով է, որ Նադիրը հայերին սիրով վերցնում էր զինվորական ու պետական ծառայության: Հայտնի է, որ նրա բանակի կազմում կային զգալի թվով հայ զինվորականներ: Օրինակ՝ 1732 թ. Համադանի համար մղված մարտերի ժամանակ նրա բանակում մարտնչում էին վեց հայկական զորաջոկատներ: Հայ զինվորականներն աչքի ընկան 1735 թ. Գանձակի և Կարսի շրջաններում տեղի ունեցած ռազմական գործողություններին՝ հատկապես Եղվարդի ճակատամարտի ժամանակ:*

*Նադիրի շրջապատում կային մի քանի բարձրաստիճան հայեր, ինչպես, օրինակ՝ մելիքներ Մկրտումը, Հակոբջանը, Եգանը, Թամրազը, Մանուչար Շահնազարյանը, Հարությունը և ուրիշներ: Սրանցից Նադիրին առավել մոտ էր հմուտ և հեռատես քաղաքական գործիչ, նշանավոր զինվորական Դիզակի մելիք Եգանը, որն արժանացել էր Նադիրի անվերապահ վստահությանն ու հարգանքին:*

*Հենց մելիք Եգանի իմաստուն խորհրդով է, որ Նադիրը հատուկ քաղաքականություն է մշակում Հայոց եկեղեցու նկատմամբ, անձամբ այցելում Ս. Էջմիածին, լինում Մայր Աթոռում, հանդիպում Ամենայն Հայոց կաթողիկոս Աբրահամ Գ Կրետացու հետ: Նա հատուկ արտոնություններ էր շնորհել Հայոց եկեղեցուն և նրան ազատել հարկերից: 1735 թ. հրովարտակով հաստատել էր Ամենայն Հայոց կաթողիկոսության իրավունքները,*

*որի համաձայն ընդարձակվել էին Մայր Աթոռի կալվածքները: Նաև Ս. Էջմիածնի տաճարին նվիրել էր 15 կիլոգրամանոց ոսկե ջահ և պարսկական ընտիր գորգեր: Չափազանց կարևոր էր, որ հայ հոգևորականության խնդրանքով Նադիրը սահմանափակում է կաթոլիկ միսիաների գործունեությունը Պարսկաստանում, արգելում նրանց քարոզչական առաքելությունը պարսկահայերի շրջանում, մի բան որ առաջացրել էր Ֆրանսիայի դժգոհությունը: Նադիրը Երևանի նոր խանին խստագույնս հանձնարարում է հոգատար լինել Հայոց կաթողիկոսի և ընդհանրապես հայերի նկատմամբ, խորհուրդ է տալիս չվստահել Երևանի պարսիկ և թուրք աղաներին, այլ ամեն հարցում «խորհրդակցել կաթողիկոսի և հայ մելիքների հետ», քանի որ «Երկիրն ու ժողովուրդը նրանցն են, և նրանք պետք է այն չենացնեն»:*

*Հայ ժողովրդի շրջանում հատկապես գոհունակությամբ ընդունվեց Նադիրի հրովարտակը ժառանգական կարգի վերաբերյալ: Եթե որևէ հայ ընդուներ մահմեդականություն, ապա նա այլևս չէր կարող, ինչպես հաստատված կարգն էր, հավակնել իր քրիստոնյա հարազատների ժառանգությանը: Նադիրը հովանավորել է նաև հայ առևտրականներին, նրանց տվել բազմաթիվ արտոնություններ: Մելիք Հակոբջանին, օրինակ, թույլատրել է Երևանում հիմնել դրամատուն և հատել արծաթե ու պղնձե դրամներ: Կաթողիկոսի խնդրանքով 7 հազար հայերի ու վրացիների նա ազատել է պարսկական գերությունից և վերադարձրել հայրենիք: Նշելի է, որ Պարսկաստանի բարձրաստիճան պետական գործիչների և հոգևորականության ներկայացուցիչների՝ 1735 թ. Մուղանում հրավիրված ժողովին մասնակցելու համար Նադիրը հրավեր էր ուղարկել նաև հայ մելիքներին ու Ամենայն Հայոց կաթողիկոսին: Ավագանու այս ժողովում էր, որ 1736 թ. մարտի 10-ին Նադիրը հռչակվել էր շահ: Նրա թագադրության հանդեսի արարողությանն անձամբ մասնակցել է Աբրահամ Կրետացին և շահի մեջքին կապել սուր: Ընդունելով սուրը՝ դրանով Նադիրը կարծես ցանկանում էր շեշտել, որ տերության բոլոր հպատակներն իր առջև հավասար են, և որ ինքը անխտիր ոչ միայն մահմեդականների, այլև քրիստոնյաների թագավորն է:*

*Հայերին և հատկապես Հայոց եկեղեցուն տրված այս արտոնությունները զարմացնում էին մահմեդական հոգևորականության ու պետական շրջանակներին և դժգոհության տեղիք տալիս: Բայց Նադիրը հաշվի չէր առնում այդ դժգոհությունները: Հայերի նկատմամբ նրա որդեգրած քաղաքականությունն ուներ ավելի հեռու գնացող նպատակներ: Անդրկովկասի (հատկապես Գանձակի, Շաքիի, Շիրվանի) և Ատրպատականի թուրք (ադրբեջանցի) խաներն ու ցեղապետները, մասամբ նաև վրացիները, ունեին չեչտված թուրքական կողմնորոշում և ամեն անգամ օսմանյան արշավանքների ժամանակ դաշնակցելով թուրքերի հետ՝ մեծ վտանգ էին ստեղծում պարսից պետության համար: Հանձինս հայերի Նադիրը ցանկանում էր թուրքամետների նկատմամբ Անդրկովկասում ստեղծել հակակշիռ ուժ, որն ինչ-որ չափով պետք է ունենար նաև պետական-քաղաքական կաղմավորում՝ ինքնավարության անկապտելի հատկանիշներով:*

*Նադիրի այս ձեռնարկումները հայ հասարակական-քաղաքական կյանքը ղեկավարող անձանց ստիպեցին արագ և ճիշտ կողմնորոշվել՝ որդեգրելով քաղաքական նոր ուղեգիծ: Այժմ նրանք անելիք ունեին ոչ թե ինչ-որ անորոշ խոստումների ու դրանց ապավինած հույսերի, այլ հաստատուն խոսքի և գործի հետ: Այսպես՝ Նադիրը Արարատյան երկրի քալանթար նշանակեց Գեղարքունիքի և Սոդքի տեր Մելիքջան Մելիք-Շահնազարյանցին: Դա Երևանի խանից հետո ամենակարևոր և ազդեցիկ պաշտոնն էր, որով երկրամասի ներքին գործերի տնօրինությունը վերապահվում էր հայ մելիքներին: Շահի հրովարտակներով մեծ իրավունքների տիրացան հատկապես Սյունիքի և Արցախի մելիքները:*

*Գահ բարձրանալուց անմիջապես հետո Նադիր շահը ձեռնամուխ եղավ Արցախի մելիքությունները ռազմաքաղաքական մի ամբողջության մեջ միավորելու գործին: Նրա հատուկ հրովարտակով Արցախի հինգ մելիքությունները միավորվեցին «Մահալ-ե խամսե» (արաբերեն խամսա՝ հինգ) նահանգի մեջ: Նորաստեղծ նահանգը դուրս բերվեց Գանձակի խանի վերահսկողությունից և դարձավ ինքնուրույն վարչական միավոր: Խամսան հարևան Գանձակի, Շիրվանի, Երևանի և այլ խանու-*

*թյունների նման պետք է ուղղակի ենթարկվեր Ատրպատականի փոխարքա Իբրահիմ Աֆշար խանին, որը Նադիրի ավագ եղբայրն էր: Եթե ինչ-որ հարցերում փոխարքան ընթացք չտար Խամսայի խնդիրներին, ապա հայ մելիքներն իրավունք ունեին անմիջապես դիմելու շահին:*

*Փաստորեն Արցախի մելիքություններից Անդրկովկասում ստեղծվեց վարչական ինքնավար նոր միավորում: Ըստ էության Նադիր շահը վավերացրեց այն, ինչ 15-ամյա պայքարի և հերոսական մաքառումների շնորհիվ ձեռք էր բերել Արցախի հայությունը:*

***բ. Խամսայի մելիքությունների իրավունքներն ու պարտականությունները:*** *Եթե մինչև Նադիր շահը Արցախի հինգ մելիքությունները տարանջատ ավատական իշխանություններ էին, վարչաքաղաքական զատ միավորներ, ապա այժմ նրանք համախմբվեցին մեկ առանձին զինական դաշնակցության մեջ: Խամսայում միավորվեցին Գյուլիստանի, Ջրաբերդի, Խաչենի, Վարանդայի և Դիզակի մելիքությունները: Խամսայի սահմանները տարածվում էին Գանձակից (այժմ՝ Գյանջա) մինչև Արաքս գետի ափերը: Հյուսիսում այն հասնում էր մինչև Գետաշեն, հարավում՝ Արաքսի վրա ձգվող Խուդափիրինի կամուրջը, Արևմուտքում՝ Սոդք, իսկ Արևելքում՝ հին Տիգրանակերտի ավերակները: Մելիքություններում իշխող տները սերում էին Արցախի հինավուրց Առանշահիկ նախարարական տոհմից: Գյուլիստանում իշխում էին Մելիք-Բեգլարյանները (իշխանանիստը՝ Գյուլիստանի ամրոցը), Ջրաբերդում՝ Մելիք-Իսրայելյանները (նստավայրն էր Ջրարերդ-Ջարարերդ ավանը), Խաչենում՝ Հասան-Ջալալյանները (նստավայրն էր Խոխանաբերդը), Վարանդայում՝ Մելիք-Շահնազարյանները (նստավայրը՝ Ավետարանոց ավանը), Դիզակում՝ Մելիք-Եգանյանները (Մելիք-Ավանյաններ), իշխանանիստն էր Տող ավանը: Նորաստեղծ զինական այս դաշնակցության (Խամսայի) գերագահ (բեկլարբեկ) նշանակվեց Դիզակի մելիք Եգանը: Խամսայի մեջ մտնող բոլոր մելիքները պետք է անվերապահորեն ենթարկվեին նրան, իսկ ինքը՝ Ատրպատականի փոխարքային: Մելիք Եգանին իրավունք էր վերապահվել նաև ուղղակիորեն դիմելու շահին: Նա*

*նաև շահի պալատական խորհրդականն էր և, ինչպես վկայում են պարսկական սկզբնաղբյուրները, Նադիրը մեծագույն հարգանքով նրան անվանում էր «Հայրացու»: Այս նշանավոր պետական-քաղաքական գործիչը մեծ ջանքեր թափեց հայկական ինքնավար իշխանության ամրապնդման ու հետագա զարգացման ուղղությամբ:*

*Խամսայի հոգևոր կենտրոնը Գանձասարի վանքն էր, որը հանդիսանում էր Աղվանից (Արցախի, Գանձասարի) կաթողիկոսության նստավայրը: XIV դարից սկսած Գանձասարի կաթողիկոսական գահը ժառանգաբար գտնվում էր Հասան-Ջալալյանների տոհմի կրտսեր ճյուղի ներկայացուցիչների ձեռքում: Գանձասարի կաթողիկոսները կարևոր դեր են խաղացել հայ ազատագրական շարժման պատմության մեջ, որոնց ականավոր ներկայացուցիչներից էր Եսայի Հասան-Ջալալյանը:*

*Խամսայի մելիքներն ունեին անսահմանափակ իրավունքներ և հանդիսանում էին իրենց գավառի տիրակալը: Նրանց կամքը հպատակների համար օրենք էր և, ինչպես նշված է մելիքներից մեկին տրված շահական հրովարտակում, «մելիքի հպատակներն ու ստորադրյալները պարտավոր են նրան համարել լիազոր տեր, չշեղվել նրա հրամաններից և տնօրինությունից»: Մելիքը պարսկական պաշտոնյա էր և նրա իրավասության ներքո գտնվող գավառը մասնավոր սեփականություն չէր: Նա գավառի տերն էր սոսկ կառավարման իմաստով, բայց, անշուշտ, ուներ նաև իր սեփական հողային ընդարձակ տիրույթներն ու անասնահոտերը: Մելիքը տիրապետում էր տնտեսական հզոր կարողությունների: Գյուղական յուրաքանչյուր ընտանիք պարտավոր էր նրան տալ բերքի մեկ հինգերորդը ու գլխահարկ և իր աշխատանքային գործիքներով տարեկան մի քանի օր ձրի աշխատել նրա համար, ցանել և հավաքել բերքը:*

*Մելիքական պաշտոնը ժառանգական էր: Մահացած մելիքին փոխարինում էր ավագ որդին, իսկ ժառանգ չունենալու դեպքում՝ եղբայրը: Յուրաքանչյուր նոր մելիք իր պաշտոնը կարող էր ստանձնել միայն շահական հրովարտակից հետո: Մելիքները պարտավոր էին ժամանակին վճարել սահմանված պետական հարկերը, ճնշել գավառում ծայր առած խռովությունները,*

*մելիքության սահմանները պաշտպանել արտաքին հարձակումներից, պատերազմների ժամանակ իրենց զորքով ներկայանալ շահին: Մնացած բոլոր հարցերում նրանք ինքնուրույն էին և ոչ մի բանով հաշվետու չէին:*

*Մելիքներն իրավունք ունեին պատժելու և պարգևատրելու իրենց հպատակներին: Դատավարության իրավունքը ևս գտնվում էր նրանց ձեռքին: Դատավարության համար օրենսգիրք չկար, և մելիքները դատում էին սովորույթի իրավունքով: Պատիժները բազմազան էին. սովորական ծեծից ու տուգանքից մինչև մահապատիժ:*

*Մելիքության կազմում գտնվող գյուղերը կառավարվում էին գյուղացիների կողմից ընտրված տանուտերների միջոցով, որոնց ընտրությունը պարտադիր վավերացվում էր մելիքի կողմից: Առանձին դեպքերում մելիքն ինքն էր նշանակում տանուտերներին: Տանուտերները հետևում էին գյուղի կարգ ու կանոնին, հավաքում հարկերը, դատում մանր հանցագործներին, անհրաժեշտության դեպքում՝ հարյուրապետի հետ, զինապարտներին առաջնորդում մելիքների մոտ: Զինվորական պարտադիր ծառայություն չկար, և մելիքները մշտական ու կազմակերպված բանակ չունեին: Սակայն մելիքներից յուրաքանչյուրը իր մոտ որպես թիկնապահներ մշտապես պահում էր 300 զինվոր: Պատերազմի ժամանակ զենք կրելու ընդունակ բոլոր չափահաս տղամարդիկ պարտավոր էին իրենց պատրաստությամբ (ձի, զենք) հավաքվել որոշված վայրում: Տարբեր ժամանակներում մելիքներն ունեցել են տարբեր քանակի զինվորական ուժեր: Եթե XVIII դարի 20-ական թվականների ազատագրական կռիվների շրջանում բոլոր սղնախները միասին կարող էին դուրս բերել մինչև 40 հազար զինվոր, ապա Նադիրի ժամանակ Խամսայի մելիքություններից յուրաքանչյուրը առավելագույնս կարող էր հանել 3-4 հազար զինվոր: Այսպիսով, Խամսայի մելիքների ռազմական ուժը կարող էր հասնել 20 հազարի: XVIII դարի երկրորդ կեսին, երբ Խամսայի մելիքները թուլանում են, նրանցից յուրաքանչյուրը կարող էր հանել 1000-ական զինվոր: Զորքը ղեկավարում էին մելիքի կողմից նշանակված հարյուրապետներն ու հազարապետները, որոնք մելիքական ընտանիքների*

*կրտսեր ներկայացուցիչներից էին:*

*Մելիքները գործուն մասնակցություն են ունեցել նաև Արցախի հոգևոր կյանքին, երբեմն միջամտել են Գանձասարի կաթողիկոսների ընտրությանը, որը հաճախ տեղիք էր տալիս մելիքական տարբեր խմբավորումների միջև շահերի բախմանն ու օտար (հարևան մահմեդական) տիրակալների անցանկալի միջամտությանը:*

*Նադիր շահի սպանությունից հետո (1747) Խամսայի մելիքների վիճակը փոխվում է. Պարսկաստանի նոր տիրակալները վերացնում են Խամսայի շատ արտոնություններ և, որ խիստ անցանկալի էր, երկրամասը դարձյալ պետք է ենթարկվեր Գանձակի խանին: Պարսկական կենտրոնական իշխանության հետագա թուլացման, անիշխանության, անընդհատ կրկնվող միջխանական ընդհարումների պայմաններում Խամսայի մելիքներն իրենց իրավունքների ու միասնականության պահպանման համար հուսահատ պայքար էին մղում, սակայն որոնք ավարտվեցին անհաջողությամբ: Հիմնական պատճառը մելիքական տների միջև ծայր առած ներքին երկպառակություններն էին ու եղբայրասպան կռիվները: Վարանդայի մելիք Հովսեփի դեմ ապստամբեց նրա կրտսեր եղբայր Շահնազարը, որը սպանելով եղբորը՝ տիրացավ մելիքական աթոռին: Խամսայի մյուս չորս մելիքները միացյալ ուժերով հարձակվեցին ինքնակոչի վրա: Շահնազարը 1752 թ. զինական օգնություն խնդրեց երկրամասի արևելյան սահմանների մոտ ծվարած քոչվոր թուրք սարըջալու ցեղապետ Փանահից և նրան տրամադրեց հինավուրց Բերդաքար-Շոշ (Շուշի) ամրոցը: Այսպես, պատմության մեջ առաջին անգամ, Արցախի սրտում բնակություն հաստատեց մի օտար թուրքական ցեղ: Փանահը 1752-1754 թթ. արագորեն վերակառուցելով Շոշի բերդը՝ ամրացավ այնտեղ: Շուտով շահը նրան շնորհեց խանական տիտղոս և հայ մելիքներին պարտադրեց ենթարկվել նրա գերիշխանությանը:*

*Այսպիսով ստեղծվեց Ղարաբաղի խանությունը, որը կատարյալ չարիք դարձավ երկրամասի բնիկ բնակչության՝ հայերի համար և հանդիսացավ Խամսայի թուլացման հիմնական պատճառներից մեկը: Եղբայրասպան կռիվներից հյուծված ու ջլատ-*

*ված Խամսայի մելիքությունններն անկարող եղան դիմադրավել Ղարաբաղի խանի և Պարսկաստանի կառավարության բացահայտ թշնամական գործողություններին, որոնց միասնական ջանքերով հայ մելիքների զինական դաշնակցությունը քայքայվեց:*

## 4. ՀՈՎՍԵՓ ԷՄԻՆԸ ԵՎ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

***ա. Հովսեփ Էմինը Անգլիայում:*** *XVIII դարի երկրորդ կեսին հայ ազատագրական շարժումների կենտրոնը Հայաստանից տեղափոխվում է գաղթավայրեր: Դա ուներ իր պատճառները: Երեքհարյուրամյա ազատագրական ելույթները, բանագնացությունները և անարդյունք բանակցություններն ունեցան նաև բացասական հետևանքներ: Հայաստանում այլևս ո՛չ ներուժ էր մնացել և ո՛չ էլ համապատասխան գաղափարական միջավայր: Այդ ժամանակաշրջանի հայաստանյան իրականության մեջ փաստորեն հնարավոր չէր ազատագրական շարժման կենտրոն ունենալ: Ահա թե ինչու հայ ազատագրական միտքը ստիպված էր վերադասավորել իր ուժերը, փոխել աշխարհագրական ու սոցիալական միջավայրը, մարտավարությունը:*

*Ազատագրական գաղափարները թափանցել էին նաև գաղթավայրեր, որոնք վաղուց էին դարձել հայ մտավոր ու տնտեսական կյանքի կենտրոններ: Գաղթավայրերում գործում էին դպրոցներ, ստեղծվել էին մշակութային կարևոր արժեքներ, կային գրչության վայրեր: Հիմնադրվել ու բարձր զարգացման էր հասել հայկական տպագրությունը (Վենետիկ, Հռոմ, Կ. Պոլիս, Ամստերդամ, Լիվոռնո, Լվով և այլուր): Աստիճանաբար կազմավորվել և զգալի դեր էր խաղում հայ մտավորականությունը: Հոգևորականության հետ նա իր ձեռքն էր վերցրել մշակութային և հասարակական-քաղաքական կյանքի կազմակերպումը: Հայկական գաղթավայրերը անտարբեր չէին հայրենիքի ճակատագրի նկատմամբ: Դրանք միշտ ուղղակի շփումներ են ունեցել Հայաստանի հետ՝ հիմնականում եկեղեցու կամ առևտրական ու տնտեսական կապերի միջոցով: Գաղթավայրերում*

*տեղյակ էին հայրենիքի թշվառ ու անճար վիճակին, տեղի ունեցող իրադարձություններին: Գաղթահայերը հնարավորության սահմաններում աշխատել են զորավիգ լինել հայ աշխարհի կարիքներին:*

*XVIII դարի կեսերին ազատագրական գաղափարախոսությունը համակում է նաև գաղթահայությանը: Այս նոր պայմաններում հայ ազատագրական շարժման հիմնական կրողն ու գաղափարախոսը դառնում է վաճառականությունը, որը շատ էական գծերով տարբերվում էր նախորդ փուլերի վաճառականությունից: Սա ավելի կազմակերպված էր, կրթված ու նախանձախնդիր: Հիշյալ երևույթները ցայտուն դրսևորվեցին հատկապես Հնդկաստանի և Ռուսաստանի հայկական գաղթավայրերում, որոնք էլ դարձան XVIII դարի երկրորդ կեսի հայ ազատագրական շարժման ակնառու կենտրոնները:*

*Հայ ազատագրական շարժման նոր փուլի ամենանշանավոր գործիչներից մեկը Հովսեփ Էմինն էր: Նա պարսկահայ էր, կրթությունն ու գաստիարակությունը ստացել էր Հնդկաստանում, իսկ քաղաքական-հասարակական հայացքներով ու գաղափարներով եվրոպական միջավայրի արդասիք էր:*

*Էմինը ծնվել է 1726 թ. Պարսկաստանի Համադան քաղաքում: 40-ական թթ. սկզբներին հայրը առևտրական գործերով տեղափոխվել էր Կալկաթա, ուր մի քանի տարի անց հաստատվել էր նաև ընտանիքը: 1745 թ. Էմինը ընդունվում է Կալկաթայի անգլիական կոլեջը՝ ուսումնառության ընթացքում ցուցաբերելով արտակարգ ընդունակություններ ու գերազանց առաջադիմություն: Այստեղ նա հաղորդակցվեց եվրոպացիներին, ծանոթացավ նրանց մշակույթին: Կոլեջից ոչ հեռու դտնվում էր բրիտանական մի զորանոց և պատանին ժամերով հափշտակությամբ դիտում էր զինվորների վարժանքն ու ռազմական խաղերը: Այդ ժամանակ էլ Էմինը որոշում է դառնալ զինվորական, որպեսզի «կարողանար որպես եվրոպական սպա գնալ Հայաստան և օգտակար լինել իր հայրենիքին»: Երբ նա այդ մասին հայտնում է հորը, վերջինս կտրականապես մերժում է որդու առաջարկը: Իր նպատակն իրականացնելու համար Էմինը որոշում է գաղտնի մեկնել Անգլիա: Նա վարձվում է Անգլիա ուղևորվող*

*«Վալպոլ» առագաստանավի վրա որպես սպասավոր: Յոթ-ամսյա երկարատև ու ծանր նավարկությունից հետո՝ 1751 թ. սեպտեմբերի 14-ին Էմինը հասնում է Անգլիա: Զինվորական դպրոց ընդունվելու նրա փորձերն ավարտվում են անհա-ջողությամբ: Պարզվեց, որ նման ուսումնական հաստատություն ընդունվելու համար անհրաժեշտ են հեղինակավոր մարդկանց երաշխավորագրեր ու հանձնարարագրեր: Էմինը հաճախում է հանրակրթական մասնավոր դպրոց: Ապրում էր ծանր ու չար-քաշ կյանքով: Ուսման վարձը վճարելու և գոյությունը պաշտ-պանելու համար միաժամանակ ստիպված է լինում աշխատել բեռնակիր, գռնապան, բանվոր, փոստատար, գրագիր: Եվ այս-պես չորս տարի:*

*1755 թվականը ճակատագրական եղավ Էմինի համար: Նա ծանոթանում է նշանավոր բանաստեղծ ու հրապարակախոս Էդմոնդ Բյորքի և Անգլիայի քաղաքական հայտնի գործիչներից մեկի՝ դուքս Գյու Ստիմսոնի հետ: Վերջինիս ջանքերով Էմինը ծանոթանում է դուքս Ռիչմոնդի, կոմս Պեմբրոկի, վիկոնտ Բոլինբրոկի, կոմս Օքսֆորդի, լեդի Անսոնի, Քենտերբերիի արքե-պիսկոպոսի, լեդի Ելիզավետա Մոնտեգյուի և շատ ուրիշների հետ: Լոնդոնի գրական ու մշակութային մթնոլորտում աստիճա-նաբար ընդլայնվում է Էմինի մտահորիզոնը, նա ուսումնասիրում է մեծ մտածողների ստեղծագործությունները, հաղորդակից լի-նում ժամանակաշրջանի ամենաառաջավոր գաղափարներին: Էմինի անձը հետաքրքրեց նաև արքայազնին՝ Կումբերլենդի դուքսին, որը որոշեց նրան վերցնել իր հովանավորության ներքո: Արքայազնի միջնորդությամբ Էմինը 1755 թ. ընդունվում է Լոնդոնից ոչ հեռու գտնվող Վուլվիչի ռազմական ակադեմիան, ուր մասնագիտանում է հրետանային գործի և ամրաշինության բնագավառներում:*

*Ուսումնառության շրջանում Էմինը շարունակում է մտորել իր հայրենիքի փրկության մասին: Հայաստանի ազատագրման գործում նա կարևոր դեր էր վերապահում Վրաստանին: Ահա թե ինչու նամակ է գրում վրաց թագավոր Հերակլ II-ին՝ առա-ջարկելով իր ծառայությունները. «Եթե Ձերդ վեհափառությունը ցանկանա,- ասված է նամակում,- կգամ Ձեզ ծառայելու և իմ*

*համեստ կարողությունների չափով կվարժեցնեմ Ձեր զորքերը»: Անշուշտ, Էմինը դեռևս հստակ պատկերացում չուներ, թե ապագայում ինչպես պետք է ազատագրել Հայաստանը, բայց նրա համար մի բան պարզորոշ էր, որ հայկական և վրացական ազատագրական շարժումները պետք է շաղկապել և այդ գործում հայ մելիքների հետ միասին կարևոր դեր ուներ Հերակլ II-ը:*

*Էմինի ուսումնառությունը ակադեմիայում երկար չտևեց, ընդամենը 13 ամիս: 1757 թ. մայիսին նա ընդհատեց պարապմունքները և գրություն ներկայացրեց ակադեմիայի պետին՝ իրեն ռազմաճակատ ուղարկելու խնդրանքով: Սկսվել էր Յոթնամյա պատերազմը և Անգլիան Պրուսիայի հետ դաշնակցած, պատերազմում էր Ֆրանսիայի դեմ: Որպես կամավոր, նա մեկնում է Գերմանիա և Կումբերլենդի դքսի հրամանատարության ներքո մասնակցում Ֆրանսիայի դեմ մղվող ռազմական գործողություններին, որոնց ժամանակ աչքի է ընկնում անձնական խիզախությամբ ու քաջությամբ: Մարտական գործողություններից մեկի ժամանակ վիրավորվում է, բայց չի թողնում ռազմադաշտը: 1758 թ. վերջին Էմինը վերադառնում է Անգլիա, տեսակցություն խնդրում վարչապետ Ու. Պիտտ Ավագից՝ ցանկանալով ճշգրտել անգլիական կառավարության դիրքորոշումը Հայաստանի ազատագրության խնդրի հանդեպ: Ընդունելությունը նրա համար պարզում է, որ Անգլիան այդ հարցում շահագրգռված չէ, և նրանից օգնություն ակնկալելն անիմաստ է: Տեսակցության վերջում Պիտտը նրան առաջարկեց կա՛մ սպայական աստիճանով ծառայել անգլիական բանակում, կա՛մ պետական ծառայության անցնել Հնդկաստանում: Էմինը երկու առաջարկություններն էլ մերժեց: Նույն օրերին բարեկամներից մեկին հղած նամակում նա գրում է. «Քանի ես ապրում եմ, պետք է ծառայեմ իմ հայրենիքին, և եթե ես ծնված եմ, որպեսզի ազատեմ իմ անպաշտպան ժողովրդին, ապա ոչ ոք չի կարող արգելք լինել ինձ: Աստծու կամքն է, որ պիտի կատարվի»:*

*Կացությանն անձամբ ծանոթանալու և հայրենիքը օտար տիրապետություններից ազատագրելու իր ծրագիրը իրագործելու նպատակով Էմինը որոշում է մեկնել Հայաստան:*

*բ. Հովսեփ Էմինի ազատագրական գործունեությունը: Հով-*

*սեփ Էմինի՝ Հայաստան գալը անսպասելի չէր: Նա վաղուց էր առիթ փնտրում իր երազանքը կատարելու: Էմինը չատ վատ գիտեր այն միջավայրը, ուր պատրաստվում էր գործելու: 1759 թ. մայիսին նա դուրս եկավ Անգլիայից և Ճենովայի վրայով նավարկեց մինչև Ալեքսանդրետ: Այստեղից ղնաց Հալեպ և նույն թվականի վերջերին երկու հայերի ուղեկցությամբ ճանապարհ ընկավ դեպի Հայաստան, որը բացասական ցնցող տպավորություն թողեց նրա վրա: Նա տեսավ թշվառ ու աղքատ մի երկիր, ստրուկ ու վախեցած մի ժողովուրդ, որի մեջ չէր մնացել անգամ պատմական հիշողություն: Կարինի գյուղերից մեկում Էմինը սկսում է հատվածներ կարդալ Մովսես Խորենացու «Հայոց պատմությունից», գյուղացիներին բացատրել, որ հայերն էլ երբևիցե ունեցել են սեփական պետություն և թագավոր, բանակ և իշխաններ: Նա գյուղացիներին քարոզում էր, թե Աստծու կողմից բոլոր մարդիկ ու ժողովուրդները ստեղծվել են հավասար: Հետևաբար, բանական էակը չպետք է հանգուրժի ուրիշի գերին լինելը: Իսկ եթե որևէ ժողովուրդ գերի է, ապա բնական է, որ նա պետք է պայքար մղի իր ազատության համար: Բովանդակ Հայաստանում նա չհանդիպեց որևէ մեկին, որը համակրեր իր ծրագրերը, չտեսավ այն ուժը, որը կարող էր բարձրանալ պայքարի: Էմինի հիասթափությունը ակներև էր: Անգամ Ս. Էջմիածնում, ուր նա ժամանեց 1760 թ. ապրիլին, անբարյացակամորեն ընդունեցին նրան: Ամենայն Հայոց կաթողիկոս Հակոբ Ե Շամախեցին սկզբում ինչ-որ հույսեր ներշնչեց, սակայն լինելով խիստ զգուշավոր և ղուսպ՝ բավարարվեց միայն սաստելով այն հոգևորականներին, որոնք փորձում էին վարկաբեկել Էմինին: Ս. Էջմիածնում և Երևանում Էմինը մանրամասն տեղեկություններ է քաղում տարածաշրջանի կացության, Պարսկաստանի ու Վրաստանի հարաբերությունների, Արցախի դրության, մելիքների քաղաքական ակնկալությունների մասին: Նա հասկացավ, որ հայերի հայացքն ուղղված է դեպի Ռուսաստան, և նրանք այստեղից են սպասում իրենց երազած ազատագրությունը: Այդ էր վկայում նաև 1760 թ. հուլիսի 17-ին Հակոբ Շամախեցու գրած ուղերձը կայսրուհի Ելիզավետա Պետրովնային: Այստեղ կաթողիկոսը կայսրուհուն խնդրում էր իր վրա վերցնել*

*«դժբախտ հայ ժողովրդի հոգատարությունը»: Այդ մտայնությունը տիրապետող էր բոլոր այն շրջաններում, որոնց հետ Էմինը շփումներ ունեցավ: Դա Էմինի համար նշանակում էր վերանայել իր նախորդ ծրագրերը և Հայաստանի ազատագրության համար նախ և առաջ դիմել Ռուսաստանի օգնությանը: Նա գիտակցում էր, որ անհրաժեշտ է անձամբ գնալ Ռուսաստան և ուղղակի կապեր հաստատել ռուս քաղաքական գործիչների հետ:*

*1761 թ. Էմինը Հայաստանից վերադարձավ Անգլիա և Լոնդոնում կապեր հաստատեց Ռուսաստանի դեսպան կոմս Ա. Մ. Գոլիցինի հետ: Դեսպանը ընդառաջեց Ռուսաստան մեկնելու Էմինի ցանկությանը և նրան հանձնեց ոչ միայն անձնագիր, այլև ցարական արքունիքի բարձրաստիճան անձանց ուղղված հանձնարարականներ ու երաշխավորագրեր: Մասնավորապես կարևոր էին Ռուսաստանի փարչապետ Մ. Ի. Վորոնցովին և արտաքին գործերի վարչությանը հասցեագրված հանձնարարականները:*

*1761 թ. նոյեմբերին Էմինը հասնում է Ս. Պետերբուրգ, ուր Ռուսաստանում Անգլիայի դեսպանը նրան ներկայացնում է վարչապետ Վորոնցովին: Հանդիպումը տեղի է ունենում վերջինիս բնակարանում: Վարչապետը մանրամասն հետաքրքրվում է Էմինի ծրագրերով և եզրակացնում, որ նա այն անձն է, որը կարող է օգտակար լինել Կովկասում՝ Ռուսաստանի արտաքին շահախնդրությունների տեսակետից: Հանդիպման արդյունքների մասին Վորոնցովը տեղյակ է պահում կայսրուհի Ելիզավետա Պետրովնային, որն իր համակրանքն է հայտնում Էմինի ծրագրերին, միաժամանակ չափազանց դրական արտահայտվում հայերի՝ որպես ազնիվ և նվիրված ժողովրդի մասին: Ահա թե ինչու վարչապետն առանց այլևայլության անցագիր է տալիս Էմինին և հանձնարարական նամակ՝ ուղղված Հերակլ II-ին: Բացի այդ, նա Էմինին ներկայացնում է Ս. Պետերբուրգում գտնվող վրաց գահաժառանգ թագավոր Թեյմուրազ II-ին, որը խոստանում է հանձնարարական նամակ տալ ուղղված որդուն՝ Հերակլ II-ին: 1762 թ. սեպտեմբերին, Մոսկվայում Եկատերինա II-ի թագադրությունից անմիջապես հետո, Էմինը դարձյալ հան-*

*դիպում է ունենում Վորոնցովի հետ: Նոր կայսրուհու անունից վարչապետը հայտնում է Էմինին, որ նա նույնպես դրական վերաբերմունք ունի հայ գործչի ծրագրերի նկատմամբ, և երբ վրա հասնի հարմար պահը, ինքը օգնելու է հայերին: Միաժամանակ Էմինին առաջարկություն է արվում մտնել ռուսական զինվորական ծառայության մեջ, բայց նա հրաժարվում է և պատրաստվում մեկնել Վրաստան:*

*Էմինի՝ Վրաստան մեկնելու նպատակը ոչ թե Հերակլին ծառայելն էր, այլ Հայաստանի ազատագրումը: Վրացական բանակի և հայ մելիքների ապստամբական ուժերի միջոցով Արևելյան Հայաստանն ազատագրելուց հետո, նրա պատկերացմամբ, երկու երկրների միջև պետք է կնքվեր պատվավոր դաշինք, որի հետևանքով ստեղծվելու էր հայ-վրացական դաշնակցային պետություն և թագավոր էր դառնալու Հերակլ II-ը: Նորաստեղծ պետության նկատմամբ պիտի հաստատվեր ռուսական հզոր տերության խնամակալությունը՝ որպես այդ երկու քրիստոնյա փոքր ժողովուրդների անվտանգության գրավական: Էմինի այդ ծրագիրը խոսուն վկայությունն էր նրա քաղաքական հասունության: Նա արդեն վճռականորեն հանդես էր գալիս որպես ռուսական կողմնորոշման համոզված կողմնակից, իսկ նրա ռոմանտիկ հրապուրանքներն ու երազանքները փոխարինվում էին երևույթների իրատես գնահատությամբ:*

*Էմինի գործունեությունը Ռուսաստանում, նրա ծրագրերն ու գաղափարները խիստ հետաքրքրեցին ռուսահայ նորելուկ մտավորականությանը, բազում առևտրականների: Շատերը պատրաստակամություն հայտնեցին աջակցել նրան: Մոսկվայում նրան մտերմացավ մեծահարուստ Հովհաննես Լազարյանը, որը հետագայում պետք է դառնար հայ ազատագրական շարժման նշանավոր գործիչներից մեկը: Լազարյանը, ինչպես նաև մոսկվաբնակ ուրիշ հայեր նյութապես օժանդակեցին Էմինին: Մոսկվայում Էմինին միացավ նրա հեռավոր ազգական արցախեցի Մովսես Բաղրամյանը, իսկ Աստրախանում՝ 30 հայ խանդավառ երիտասարդներ, որոնք պատրաստ էին նրա հետ մեկնել հայրենիք ու կռվել նրա ազատագրության համար:*

*1763 թ. փետրվարին Էմինը դուրս եկավ Մոսկվայից և*

*Աստրախանի ու Ղզլարի վրայով մեկնեց Վրաստան: Ամենուր հայերը նրան դիմավորում էին մեծ շուքով ու հանդիսություններով՝ որպես Հայաստանի ազատարարի, շատերը պատրաստակամություն էին հայտնում նյութապես օգնելու նրան:*

*XVIII դարի երկրորդ կեսին, Նադիր շահի սպանությունից հետո, Վրաստանը աստիճանաբար սկսում է հզորանալ: Թեյմուրազ II-ի և հատկապես նրա որդու՝ Հերակլ II-ի օրոք Պարսկաստանի ծայրագավառներից մեկը՝ Գյուրջիստանը, ձեռք է բերում լիակատար անկախություն և դառնում տարածաշրջանի քաղաքական կարևոր միավորներից մեկը: Հերակլ II-ը, անկասկած, ժամանակի երևելի պետական գործիչներից էր: Նրա անունը լայնորեն հայտնի էր ոչ միայն Մերձավոր Արևելքի ու Ռուսաստանի, այլև Արևմտյան Եվրոպայի քաղաքական շրջաններում, և պատահական չէր Էմինի հետաքրքրությունը նրա անձով: Ճիշտ է, նրա պատկերացումները Հերակլի մասին գունազարդված էին և չէին համապատասխանում իրականությանը: Անշուշտ, Հերակլը հեռու էր ազատարար թագավորի այն կերպարից, որ իր մտքում կերտել էր Էմինը: Խելացի, խորամանկ, երկդիմի այս միապետը ցանկանում էր տնտեսական ու ռազմական բարեփոխումների միջոցով զարգացնել երկիրն ու եվրոպականացնել: Ահա թե ինչու նրան անհրաժեշտ էին եվրոպական կրթություն ունեցող մասնագետներ: Հենց այս տեսակետից էլ նա ընդունեց Էմինին և որոշեց օգտվել նրա ծառայություններից:*

*1763 թ. ապրիլի վերջերին Էմինը ժամանեց Թիֆլիս: Դեռ քաղաք չմտած՝ նրան հանդիսավորությամբ դիմավորում են հայ-վրացական հեծելազորային մի ջոկատ և բազմաթիվ խանդավառ հայեր: Հերակլ II-ը նրան ընդունեց մեծ պատիվներով ու հարգանքով: Նա ուշադրությամբ լսեց Էմինի առաջարկությունները՝ Վրաստանում ռազմական դպրոցներ հիմնադրելու, վրացական բանակը եվրոպական եղանակով վարժեցնելու, երկրի տնտեսական զարգացման, լուսավորություն տարածելու, պետական կյանքում բարեփոխումներ անցկացնելու վերաբերյալ: Բայց երբ Էմինը փորձեց խոսք բացել իր ծրագրերի մասին, պարզ դարձավ, որ վրաց թագավորը չի բաժանում դրանք: Հերակլը շատ օգուտներ էր ակնկալում Էմինի ներկայությունից ի*

*չահ Վրաստանի: Էմինն իր Թիկնապահ ջոկատով մարտնչում է Վրաստան ներխուժած լեզգիների դեմ, ձեռնամուխ է լինում վրացական բանակի վարժեցմանը և այլն: Հասկանալով, որ ոչինչ Էմինին չի կարող հետ պահել իր ազատագրական ծրագրերից, Հերակլը ուղիներ է փնտրում նրան Վրաստանից հեռացնելու համար:*

*Վրաստանից Էմինը աշխույժ նամակագրական կապ է հաստատում Երևանի մեծամեծների, Արցախի մելիքների, Հայոց կաթողիկոսի, հոգևորականության առանձին ներկայացուցիչների հետ և փորձում շոշափել նրանց տրամադրությունները, ազատագրական շարժմանը աջակից լինելու պատրաստակամությունը: Էմինի գործունեությունն անհետևանք չմնաց: Նրա գաղափարները խանդավառեցին ոչ միայն Արցախի մելիքներից շատերին, այլև Արևմտյան Հայաստանի հոգևորականության որոշ ներկայացուցիչների:*

*XVIII դարի կեսերին արևմտահայ ազատագրական շարժման գործիչների շրջանում ևս արմատացել էր Ռուսաստանի օգնությամբ ազատագրվելու գաղափարը: Այդ ակնկալությունները հատկապես ավելի ուժեղացան, երբ Ռուսաստանը սկսեց վճռական դեր խաղալ մերձավորարևելյան քաղաքականության մեջ:*

*Հովսեփ Էմինի գործունեության մասին տեղեկություններ էին Թափանցել նաև Արևմտյան Հայաստան, ուր ազատագրական շարժման յուրօրինակ կենտրոն էր դարձել Մշո Ս. Կարապետի վանքը: Վանքի վանահայրը՝ Հովնան եպիսկոպոսը, ժամանակի ուսյալ և բազմակողմանի գիտելիքների տեր հոգևորականներից էր և մեծ հեղինակություն էր վայելում արևմտահայոց շրջանում: Նա սերտ կապեր ուներ Վանի, Կարինի առևտրա-արհեստավորական շրջաններում և Կ. Պոլսի ամիրայական միջավայրում: Հովնան եպիսկոպոսը, լսելով Հովսեփ Էմինի մասին, որոշում է կապ հաստատել նրա հետ և Մուշից հատուկ բանագնաց է ուղարկում Թիֆլիս: Էմինին ուղղած նամակում Հովնանը հավաստիացնում էր, Թե որոշ բացատրական-նախապատրաստական աշխատանքներից հետո արևմտահայերը կարող են բարձրացնել ապստամբություն, մանավանդ Տարոնում և Սասու-*

*նում: Էմինի և Հովնանի միջև սկսվում է աշխույժ նամակագրություն: Էմինը Համփշատակվում է Հովնանի առաջարկությամբ և Մուշ է ուղարկում 30-Հոգանոց կամավորական իր Թիկնապահ ջոկատը, որը աստրախանցի Սիմոնի Հրամանատարությամբ դրվում է Հովնանի տրամադրության տակ: Այս 30 կամավորներն առաջին ռուսաՀայերն էին, որ գնում էին Արևմտյան Հայաստան՝ իրենց արևմտաՀայ եղբայրներին օգնության:*

*1764 Թ. սկզբներին Հովնան եպիսկոպոսը Մուշի երևելի Հայերից մեկի՝ մելիք Ստեփանի միջոցով Էմինին է ուղարկում մանրամասն նամակ-զեկուցագիր, որտեղ տեղեկացնում է, Թե ինքը անցնող ամիսների ընԹացքում կապեր է Հաստատել Վանի, Կարինի, Դիարբեքիրի, Կեսարիայի, Թոխաթի, նաև Զմյուռնիայի և Կ. Պոլսի անվանի Հայերի Հետ, որոնք ողջունել և իրենց ՀամաձայնուԹյունն են տվել Էմինի ազատագրական ծրագրերին, ինչպես նաև՝ եղզիների և ասորիների Հետ, որոնք պատրաստակամություն են Հայտնել միանալու Հայ ապստամբներին: Հովնանը Հավաստիացնում էր Էմինին, Թե Արևմտյան Հայաստանում արդեն Հավաքագրված են ապստամբությանը պատրաստ 40 Հազար մարտիկներ, առանձին վայրերում ստեղծվել են գաղտնարաններ, որտեղ պաՀեստավորվել են զենք, զինամԹերք և անՀրաժեշտ Հանդերձանք: Ազատագրական պայքարի նպատակների Համար Արևմտյան Հայաստանի տարբեր շրջաններում նրա մարդիկ սկսել են կազմակերպել դրամական Հանգանակություն, Հանուն այդ նպատակի նվիրաբերվել է նաև եկեղեցական Թանկարժեք ոսկե և արծաթե սպասք:*

*Էմինը Հերակլին տեղյակ է պաՀում Հովնանի Հայտնած տեղեկությունների մասին, միաժամանակ փորձում է նրան Համոզել, որ զբաղվի Արևմտյան Հայաստանի ազատագրության Հարցով: ՊաՀը ավելի քան Հարմար էր, քանզի Թուրքիայի և Վրաստանի Հարաբերությունները չափազանց լարվել էին և Թուրքերը պատրաստվում էին արշավել Արևելյան Վրաստան: Հերակլին Հետաքրքրում է Թուրքերի Թիկունքում Հայերի Հնարավոր ապստամբության մանրամասները: Էմինը Թագավորին խորՀուրդ է տալիս վրացական 18 Հազարանոց բանակը (6 Հազար Հեծյալ և 12 Հազար Հետևակ) Երևանի վրայով ուղարկել Բայա-*

*գետ, այնուհետև՝ Վան, Կարին, Բասեն, Բիթլիս, Սասուն: Այս շրջանների ապստամբական ջոկատները միանալու էին ազատարար բանակին և միասնական ուժերով ազատագրելու էին ողջ Արևմտյան Հայաստանը: Էմինը չէր չէչտում է, թե արևմտահայերը Հերակլ II-ին ընդունելու են որպես իրենց թագավորի: Արևմտահայ ազատագրական շարժման գործիչներին խրախուսելու նպատակով Հերակլը 1764 թ. մարտին Էմինի մտերիմներից մեկի՝ մահտեսի Գրիգորի միջոցով նամակ է ուղարկում Հովնանին և հորդորում շարունակել ապստամբության նախապատրաստական աշխատանքները: Սակայն մահտեսի Գրիգորը Երևանում ձերբակալվում է: Երևանի Հուսեյն խանի ձեռքն են ընկնում Հերակլի և Էմինի՝ Հովնանին հասցեագրած նամակները, որը դրանք հանձնում է Ամենայն Հայոց կաթողիկոս Սիմեոն Ա Երևանցուն: Կաթողիկոսը, որ վաղուց հետևում էր Էմինի գործունեությանը, դատապարտում է նրա տեսակետներն ու գործելակերպը և միջոցներ փնտրում նրան հեռացնելու Անդրկովկասից: Անշուշտ, Սիմեոն Երևանցին ևս երազում էր Հայաստանի ազատագրության մասին, սակայն գտնում էր, որ դա հնարավոր է միայն արտաքին ուժի, տվյալ դեպքում՝ Ռուսաստանի օգնությամբ: Ուստի հայ ժողովուրդը պետք է համբերությամբ սպասեր իր ազատագրմանը, Պարսկաստանի և Թուրքիայի դեմ չդիմեր ինքնուրույն ելույթների, քանի որ անպատասխանատու, արկածախնդրական քայլերը կարող էին կործանել ժողովրդին: Հայոց կաթողիկոսը հանդիմանական նամակ է հղում Հերակլին և նրան առաջարկում է խզել ամեն մի կապ Հովնանի հետ, իսկ Էմինին վտարել Վրաստանից:*

*Հերակլ II-ը չէր կարող հաշվի չառնել Ամենայն Հայոց կաթողիկոսի բացասական կարծիքը Էմինի մասին: Նա չէր ցանկանում ստվերել հայոց հեղինակավոր հովվապետի բարեհաճ վերաբերմունքն իր նկատմամբ ու խախտել բարեկամական հարաբերությունները նրա հետ: Հերակլը հասկանում էր, որ վրացական պետությունն այնքան հզոր չէր, որ կարողանար ինքնուրույնաբար դուրս գալ Օսմանյան կայսրության դեմ: Էմինի հավաստիացումները 40-հազարանոց հայկական ապստամբական բանակի մասին, թվում էին խիստ կասկածելի: Մյուս կողմից՝*

*Պարսկաստանը նույնպես չէր կարող թույլ տալ ի հաշիվ Երևանի խանության վրացական պետության սահմանների ընդլայնումը: Ուստի գտնելով, որ Էմինի հետագա ներկայությունը Վրաստանում կարող է խիստ վատթարացնել հարաբերությունները Պարսկաստանի և Թուրքիայի հետ՝ Հերակլը 1764 թ. հուլիսին նրան արտաքսում է Վրաստանից Ռուսաստան, ուր գտնվում էին «նրա բարեկամները»: Այս դեպքերից հետո արևմտահայության ազատագրական շարժումներն աստիճանաբար դադարեցին:*

*Գործադրված հալածանքներն ու բռնությունները չվհատեցրին Էմինին: Նա չէր ցանկանում վերադառնալ Ռուսաստան, մանավանդ՝ Անգլիա, չէր ցանկանում կիսատ թողնել այն հսկայական աշխատանքը, որ ձեռնարկել էր Հայաստանի ազատագրության համար:*

*Երկու տարի՝ 1764–1766 թթ., Էմինը բնակվում էր Հյուսիսային Կովկասում, նախ՝ չեչենների, ապա՝ լեզգիների մոտ: Չեչենների ցեղապետների խնդրանքով որոշ ժամանակ վարժեցնում է նրանց բանակը: 1766 թ. կեսերին լեզգիական մի զորաջոկատի հետ գալիս է Գանձակ: Էմինի բուն նպատակն էր տեղափոխվել Արցախ: Նա երկար ժամանակ նամակագրական կապ ուներ մելիքների և Գանձասարի կաթողիկոսի հետ և քաջատեղյակ էր Խամսայի ողբալի դրությանը: Ղարաբաղի Փանահ և Իբրահիմ խաների ջանքերով Խամսայի մելիքությունների միասնությունը քայքայվել էր: Վարանդայի մելիք Շահնազար II-ը, որ եղբայրասպան ընդհարումների սկզբնապատճառ էր, դարձել էր խանի կամակատարը: Գյուլիստանի մելիք Հովսեփն ու Ջրաբերդի մելիք Հաթամը Իբրահիմի կողմից վտարվել էին իրենց տիրույթներից և ապաստան գտել Գանձակի խանության սահմաններում: Խամսայի այս անպատիվ կացությունը ստիպել է Ամենայն Հայոց կաթողիկոս Սիմեոն Երևանցուն ծանր խոսքերով հանդիմանել մելիքներին՝ ասելով. «Այսպիսի անձնապաստանությամբ միմյանց վրա հարձակվելով Հայոց թագավորությունը վերացրեցիք, Հայոց աշխարհն ավերեցիք և այլազգիների գերությանը հանձնեցիք, ու մի քանի մելիք, որ մնացել եք, ծարավ եք միմյանց արյան»: Բայց մելիքները շարունակում էին իրենց խոտոր ըն-*

*թացքը՝ ձգտելով մի կերպ համակերպվել մահմեդական տիրակալների պարտադրած ստորացուցիչ պայմաններին:*

*Էմինը հույս ուներ վերականգնել Խամսայի միասնությունը, հաշտեցնել մելիքներին և նրանց բարձրացնել զինված ապստամբության: Ամբողջ 1767 թ. ընթացքում Էմինը բնակվում էր Գյուլիստանում՝ մելիք Հովսեփի մոտ: Այստեղ նա մի շարք հանդիպումներ է ունենում Արցախի նշանավոր գործիչների, մասնավորապես Գանձասարի կաթողիկոս Հովհաննես Հասան-Ջալալյանի հետ և նրանց համոզում է ներգրավվել իր ազատագրական ձեռնարկումների մեջ: Հանդիպումներ է ունենում նաև Իբրահիմ խանի հետ՝ փորձելով շոշափել նրա մտադրությունները: Հանդիպումներից հետո նա համոզվում է, որ այդ պահին ինքն ի վիճակի չէ մելիքներին հաշտեցնելու և միաբանելու: Դրա համար անհրաժեշտ էին ժամանակ, նաև՝ միջոցներ: Իսկ ժամանակ չկար:*

*Սիմեոն Երևանցի կաթողիկոսը, որ ուշի-ուշով հետևում էր Էմինի գործունեությանը, Գանձասարի կաթողիկոսին և մելիքներին հորդորում է հրաժարվել նրա ծառայություններից և հեռացնել Արցախից: 1767 թ. հոկտեմբերին մելիք Հովսեփը ճարահատյալ խնդրում է նրան թողնել Գյուլիստանը: Էմինը ստիպված էր հեռանալ Արցախից և 1768 թ. գարնանը Պարսկաստանի վրայով մեկնել Հնդկաստան:*

*Թեև Էմինի տասնամյա համառ, հետևողական, անխոնջ գործունեությունը չպսակվեց գործնական որևէ արդյունքով, սակայն նոր աստիճանի բարձրացրեց հայ ազատագրական շարժման գաղափարը: Ինքը՝ Էմինը, չընկճվեց կրկնվող անհաջողություններից, չհրաժարվեց իր համատամքից և շարունակեց պայքարը: Արդեն Հնդկաստանի Մադրաս քաղաքում նա 1773 թ. մտնում է Շ. Շահամիրյանի ազատագրական խմբակի մեջ և անմնացորդ նվիրումով մասնակցում նրա գործունեությանը, իր լավատեսությամբ ոգևորում շատերին: Մադրասի հայ մեծահարուստները որոշում են նրա տրամադրության տակ դնել տարեկան 12 հազար ռուփի՝ հայկական զորախումբ ստեղծելու համար: Հայտնի վաճառական Գրիգոր Խոջաջանյանը պատրաստակամություն է հայտնում հայկական բանակի կազմակերպ-*

*մանը նվիրաբերել իր հսկա կարողության մեծ մասը: Շ. Շահամիրյանը և ուրիշները նույնպես որոշում են նյութական օժանդակություն ցույց տալ: Հնդկահայ վաճառականների ու գործարարների այս առատ նվիրատվությունները Էմինին ստիպում են մշակել Հայաստան վերադառնալու, այնտեղ զորախմբեր ստեղծելու և ազատագրական պայքարը շարունակելու նոր ծրագրեր: Բայց երբ գումարի մի մասն արդեն հավաքված էր, Մադրասում գտնվող Երուսաղեմի նվիրակ Հովհաննես եպիսկոպոսը խափանում է այս գործը և վաճառականներին պարտադրում հետ վերցնել ներդրված դրամական միջոցները: Անկասկած նվիրակը գործում էր Ամենայն Հայոց կաթողիկոսի հանձնարարությամբ ու գիտությամբ:*

*1783 թվականից Էմինը մշտապես բնակվում է Կալկաթայում, որտեղ և մահանում է 1809 թվականին: Կյանքի վերջին տարիներին նա անգլերենով շարադրել է «Հովսեփ Էմինի կյանքն ու արկածները» ինքնակենսագրական գիրքը (Լոնդոն, 1792), որը XVIII դարի երկրորդ կեսի հայ ազատագրական շարժումների պատմության արժեքավոր սկզբնաղբյուրներից է: Սույն գիրքը մեծ հայրենասերի վերջին փորձն էր՝ հայության մեջ սեր ներարկել «մարդկության բարիքների միակ աղբյուրի»՝ ազատության նկատմամբ:*

*Հովսեփ Էմինի հայացքները խոր ազդեցություն են գործել հայ ազատագրական շարժման հետագա շրջանի գործիչների վրա և կարևոր նշանակություն են ունեցել շարժման գաղափարախոսության հստակեցման տեսակետից:*

## 5. ՄԱԴՐԱՍԻ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԽՄԲԱԿԸ

***ա. Խմբակի ստեղծումը:*** *Հայ ազատագրական շարժումների պատմության մեջ կարևոր դեր են խաղացել Հնդկաստանի հայկական գաղթավայրերը, մասնավորապես՝ Մադրասը: XVIII դարի երկրորդ կեսին այդ գաղթավայրերում լայն աշխատանքներ ծավալվեցին հայ ազատագրական շարժման գաղափարախոսության հետագա մշակման ուղղությամբ:*

*Հնդկահայ միջավայրում տարածված այս շարժումն ուներ ժամանակի ամենաառաջադիմական բովանդակությունը և պայմանավորված էր մի շարք հանգամանքներով: Հնդկահայ առևտրական շրջանակները սերտ կապեր ունեին արևմտաեվրոպական երկրների, իսկ Հնդկաստանում՝ ամենօրյա շփումներ անգլիացիների հետ: Այս հանգամանքը նպաստել է, որ հնդկահայ գործիչները լավատեղյակ լինեին եվրոպական լուսավորիչների գաղափարներին: Դա նաև մի ժամանակաշրջան էր, երբ տեղի անգլիական գաղութային իշխանությունները բոլոր միջոցներով փորձում էին հայերին դուրս մղել Հնդկաստանից: Անգլիացիներն ուղղակի հաշվեհարդար սկսեցին անպաշտպան հայ առևտրականների նկատմամբ՝ բռնագրավելով նրանց նավերն ու յուրացնելով ապրանքները: Դրա հետևանքով հնդկահայ վաճառականները դուրս մղվեցին արտաքին վաճառահանման շուկաներից և կամա թե ակամա իրենց հայացքն ուղղեցին դեպի հեռավոր հայրենիքը՝ մշակելով ծրագրեր նրա ազատագրության, հայրենի պետականության վերականգնման համար և գիտակցելով, որ միայն սեփական պետությունն է ի վիճակի պաշտպան կանգնելու հայ վաճառականությանը և հետապնդելու նրա շահերը:*

*Հնդկահայ վաճառականության ականավոր ներկայացուցիչներից էր Շահամիր Շահամիրյանը (1723–1797): Նա ծնվել է Նոր Ջուղայում, ղրաղվել դերձակությամբ: Ուրիշ շատ ջուղայեցիների նման գաղթել էր Հնդկաստան և բնակություն հաստատել Մադրասում: Այստեղ նա դարձել էր ադամանդավաճառ և կարճ ժամանակում մեծ հարստություն կուտակել, եղել էր Հնդկաստանի ամենաունևոր մարդկանցից մեկը: Նրան էին պատկանում բազմաթիվ խանութներ, կալվածքներ, գործարաններ, ծխախոտի պլանտացիաներ:*

*Շ. Շահամիրյանը մեծ սեր ու ձգտում ուներ դեպի գիրն ու գրականությունը և ազատ ժամերին զբաղվում էր ինքնակրթությամբ: Նա կարևոր դեր է կատարել Մադրասի հայկական համայնքի կյանքում: Եղել է Մադրասի հայոց ինքնավարության կազմակերպիչներից մեկը և ինքնավարության կանոնադրության («Նոր տետրակ, որ կոչի նշավակ», 1783) հեղինակը:*

*Շ. Շահամիրյանի հասարակական-քաղաքական հայացքների և ազատագրական գործունեության վրա նշանակալի ազդեցություն են ունեցել Մովսես Բաղրամյանն ու Հովսեփ Էմինը:*

*Մովսես Բաղրամյանը XVIII դարի երկրորդ կեսի հայ ամենաականավոր մտածողներից ու ազատագրական շարժման գաղափարախոսներից էր: Նա ծնունդով արցախեցի էր, կրթությունը ստացել էր Նոր Ջուղայում, զբաղվել վաճառականությամբ: Որոշ ժամանակ բնակվել է Մոսկվայում, որտեղ էլ 1762 թ. հանդիպել էր իր հեռավոր ազգական Հովսեփ Էմինին: 1762-1767 թթ. Բաղրամյանը եղել է Էմինի հավատարիմ զինակիցը և նրա հետ ջանքեր է գործադրել Հայաստանի ազատագրության խնդիրը գլուխ բերելու համար: 1767 թ. բաժանվել է Էմինից և տեղափոխվել Հնդկաստան, բնակվել է Մադրաս քաղաքում: Այստեղ էլ ծանոթացել է Շ. Շահամիրյանի հետ ու համաձայնվել դառնալ վերջինիս որդիների՝ Հակոբի և Եղիազարի ուսուցիչը: Բաղրամյանն իր սաներին, ինչպես նաև Շ. Շահամիրյանին ու նրա մի քանի մտերիմներին ծանոթացրել է Էմինի քաղաքական ծրագրերին և Հայաստանի ազատագրության վերաբերյալ իր տեսակետների հետ: Շ. Շահամիրյանի մոտ միտք է հղանում գաղափարակիցների այս փոքրիկ շրջանակը համախմբել մի կազմակերպության մեջ: 1771 թ. նրա անմիջական ջանքերով ու ղեկավարությամբ Մադրասում ստեղծվեց հայ իրականության մեջ առաջին քաղաքական խմբակը, որի մեջ, բացի իրենից, մտնում էին նաև որդիները՝ Հակոբն ու Եղիազարը, Մովսես Բաղրամյանը, հարուստ առևտրական Գրիգոր Խոջաջանյանը և ուրիշներ:*

*Մադրասի խմբակի նպատակների ու ծրագրերի, ինչպես նաև Հայաստանի ազատագրության հարցի շուրջ Շ. Շահամիրյանը աշխույժ նամակագրություն է սկսում Արցախի մելիքների, Ս. Էջմիածնի ու Գանձասարի կաթողիկոսների, վրաց Հերակլ II թագավորի և այլոց հետ: Շ. Շահամիրյանն այն միտքն է զարգացրել, որ Հայաստանը ազատագրվելու է հայերի ղանգվածային ապստամբությամբ, որը գլխավորելու են Ս. Էջմիածինն ու Արցախի մելիքները: Հայաստանի ազատագրության գործում Շ. Շահամիրյանն ակնկալում էր նաև վրաց թագավոր Հերակլ II-ի*

*զինական օգնությունը: Նա առաջարկում էր կնքել հայ-վրացական ռազմական դաշինք, որի շնորհիվ հնարավոր կլիներ ոչ միայն ազատագրել Հայաստանը, այլև ապահովել համատեղ ձեռք բերված անկախության անվտանգությունը: Անշուշտ, Շահամիրյանն ըմբռնում էր, որ միայն հայ-վրացական ռազմական ուժերով հնարավոր չէ երկրամասում երաշխավորել երկարատև խաղաղություն, ուստի մեծ նշանակություն էր տալիս Ռուսաստանի ռազմաքաղաքական օգնությանը:*

*Խմբակի գործունեությանն ավելի կազմակերպված բնույթ հաղորդելու և ազատագրական գաղափարները բովանդակ հայության մեջ տարածելու նպատակով Շ. Շահամիրյանը Եվրոպայում գնում է տպագրական սարքավորումներ, պատրաստել տալիս հայկական տպատառեր, Ֆրանսիայից հրավիրում տպագրական գործի հմուտ վարպետներ և 1771 թ. Մադրասում հիմնում է հայկական տպարան: Որոշ ժամանակ անց այստեղ տպագրվում են հայերի ազգային ինքնաճանաչողությանն ու ազատագրական շարժման վերելքին նպաստող հրապարակախոսական-քաղաքական բնույթի մի քանի գրքեր: Ազատագրական խմբակի գործունեությունն ավելի է աշխուժանում, երբ 1773 թ. Էմինը երկարատև թափառումներից հետո բնակություն է հաստատում Մադրասում: Խմբակի անդամները, որ քաջատեղյակ էին Էմինի հայացքներին ու ազատագրական ծրագրերի մանրամասներին, ոգևորվում են նրա ներկայությունից և որոշում են օգնել նրան ստեղծելու հայ ազատագրական բանակ:*

*Խմբակը սկսում է գործնական քայլեր կատարել Հայաստանի ազատագրության իր ծրագիրն իրականացնելու ուղղությամբ:*

***բ. Խմբակի քաղաքական հրապարակախոսությունը:** Հայաստանի ազատագրության ծրագիրը շարադրված է Մադրասի խմբակի անդրանիկ քաղաքական-հրապարակախոսական տրակտատի՝ «Նոր տետրակ, որ կոչի հորդորակ» երկասիրության մեջ: Այն առաջին փորձն էր Հայաստանի ազատագրության գաղափարը գրավոր խոսքով ժողովրդին մատուցելու ասպարեզում:*

*«Նոր տետրակը» տպագրվել է Մադրասում 1772–1773 թթ.:*

*XVIII դարի հայ մտավոր միջավայրում «տետրակ» արտահայտությունը օգտագործվել է «գիրք» հասկացության փոխարեն, ինչպես օրինակ՝ «Տետրակ այբբենական»: Գրքի մտահղացման գաղափարը պատկանում է Շահամիր Շահամիրյանի որդուն՝ Հակոբ Շահամիրյանին (1745-1774), որը, ինչպես ինքն էր խոստովանում, երկար ժամանակ «խորհում էր որևէ պիտանի բան կատարել անձկալի հայոց ազգի համար» և «ավելի բարի գործ, քան այս գիրքն էր», չկարողացավ կատարել: Հ. Շահամիրյանը երիտասարդ էր (ընդամենը 27 տարեկան) ու անփորձ, ուստի «Նոր տետրակը» շարադրելուն օգնել է «իր հրահանգիչը»՝ Մովսես Բաղրամյանը: Բայց ակնհայտ է, որ գրքում արտահայտված տեսակետները միայն այս երկուսինը չէին, այլ ամբողջ խմբակինը:*

*«Նոր տետրակը» հասցեագրված էր «Հայկազուն երիտասարդներին ու պատանիններին ծուլության քնի վնհերոտ ու անհոգ թմրությունից սթափվելու համար»: Գրքի նպատակն էր ազգային ինքնագիտակցություն ներարկել և քաղաքական գիտելիքներ տալ հայ երիտասարդությանը: Հեղինակը վճռականորեն քննադատում է հոգևորականությանը, որը հայկական պետականության կորուստն ու հայ ժողովրդի ծանր կացությունը ներկայացնում էր որպես նրա գործած բազում մեղքերի համար վերուստ առաքված պատիժ: Ստեղծված ծանր կացության մեջ, սակայն, Աստված որևէ գործ չունի, նշված է «Նոր տետրակում»: Հայաստանի քաղաքական ճակատագրի պատասխանատուն հայ ժողովուրդն է և ուրիշ ոչ ոք: Հետևաբար, Հայաստանի ազատագրության գործն էլ հայ ժողովրդի գործն է: Քանիցս հայերը դիմել են եվրոպական հզոր պետություններին՝ օգնություն հայցելով, բայց ոչ մի օգնություն չեն ստացել: Հետևապես հայերն առաջին հերթին պետք է հույսը դնեն իրենց վրա և ոչ թե օտարների: Եվրոպայի միջոցով ազատագրվելու ակնկալությունը մոլորություն է և հետևանք հայ ազատագրական պայքարի սխալ մտայնության: Ազատությունը չի կարող ձեռք բերվել մուրալով կամ բանակցություններով: Ազատագրվելու միակ միջոցը զինված ապստամբությունն է, ուստի ժողովուրդը պետք է զինվի: Չպետք է վախենալ դժվարություններից, զոհեր տա-*

*լուց: Ժողովրդի մի մասը պետք է իր արյունը թափի, որպեսզի մյուս մասն ազատագրվի օտար տիրապետություններից: Առանց զոհերի ու պայքարի, միայն Աստծո ողորմածությամբ ոչ մի ժողովուրդ չի ազատագրվել: Մահ հանուն հայրենիքի ազատության՝ ահա փրկության միակ ճանապարհը: «Լավ է մեկ անգամ մեռնել քաջաբար, քան ապրել այսպիսի թշվառությամբ»,- եզրակացնում է հեղինակը:*

*Ազատության համար ժողովուրդը պետք է ունենա այդ հասկացությունն ըմբռնելու և գնահատելու մակարդակ: Դրա համար նրան պետք է սթափեցնել, դուրս բերել քաղաքական տգիտության ու անտարբերության ճահճից: Հայաստանի ազատագրության ծրագիրն իրականացնելու համար հեղինակը անհրաժեշտ է համարում լուսավորել ու կրթել հայերին: Լուսավորությունն ու գիտությունն են ժողովուրդների երջանկության հիմնապատճառները: «Եվրոպական բազում ժողովուրդներ,- գրում է Հ. Շահամիրյանը,- նախկինում համանման էին մեր ժողովրդին, սակայն այժմ նրանք մեծահարուստ են, կիրթ ու ուսյալ, քանզի բազմապիսի գիտություններ են ուսումնասիրել ու լուսավորյալ են»: Իսկ հայերը դեռևս շարունակում են խարխափել տգիտության մեջ: Հեղինակը հայ ծնողներին կոչ էր անում իրենց զավակներին տալ կրթություն, որպեսզի սովորեն գիտություն ու արհեստներ, բայց հատկապես սովորեն զենք գործածել, որ նրանք դաստիարակվեն հայրենասիրական գաղափարներով, ոգեշնչվեն հայրենիքի ազատագրության տեսիլքով: Ժամանակին հայերն էլ են եղել միասնական ժողովուրդ և ապրել են միասնական ազատ հայրենիքում: Բայց հետագայում կորցրել են իրենց պետական անկախությունը, ընկել օտարների տիրապետության տակ, ցրվել աշխարհով մեկ: Ուրիշ ժողովուրդների նման հայերը նույնպես կարող են ոտքի ելնել և թոթափել օտարի տիրապետությունը: Այդ նպատակին հասնելու համար աշխարհով մեկ ցրված հայությունը պետք է վերադառնա Հայաստան, կենտրոնանա հայրենիքում, համախմբված ուժերով վերականգնի կործանված ազգային պետությունը, ստեղծի անկախ և ազատ «Մայր Հայաստան»: Հեղինակն առաջին անգամ շրջանառության մեջ էր դնում «Մայր Հայաստան» հասկացությունը,*

*որն իր որդիների անձնազոհ պայքարի շնորհիվ վերստին դառնալու էր Հայոց հայրենիք և «հասնելու էր փառքի ու պատվի»: Հայն ուրիշից չէր հափշտակում այդ երկիրը, այլ ստանում էր իր վաղեմի սեփականությունը, որ կորցրել էր անմիաբանության, ծուլության, տգիտության պատճառով:*

*Պատմության դասերն ըմբռնելու, թույլ տրված սխալներն ուղղելու, երիտասարդությանը ազգային ինքնագիտակցության ոգով դաստիարակելու համար հեղինակը դիմում է ամենազոր ու ազդու միջոցին՝ հայ ժողովրդի պատմության օգնությանը: «Նոր տետրակում» առանձին գլուխներով զգալի տեղ է հատկացված Հայաստանի պատմությանն ու աշխարհագրությանը: Այստեղ համառոտակի շարադրված են Հայկ Նահապետից մինչև Լևոն VI-ի ժամանակաշրջանի քաղաքական անցքերն ու XVIII դարի երկրորդ կեսի Խամսայի պատմությունը: Փաստորեն՝ սա հայ ժողովրդի ամբողջական պատմության շարադրման անդրանիկ փորձերից մեկն էր, որտեղ հեղինակը Հայաստանի հերոսական անցյալին հակադրում էր սարսափելի, դժնդակ ներկան: Հեղինակն առաջարկում է նաև այս վիճակից դուրս գալու ելքը. «Պետականությունը, որ կորցրել ենք մեր անկարգության, անմիաբանության, անգիտության ու ծուլության պատճառով, վերստին վերականգնելու ենք խոհեմությամբ ու արիությամբ: Դա հնարավոր է, եթե բոլոր հայերը մի սիրտ, մի հոգի և մի կամք դառնան ու միաբանվեն»:*

*Հայոց պետականության անկման պատճառներից մեկը հեղինակը համարում է հայոց թագավորների ու իշխանների միանձնյա իշխանությունն ու կամայականությունները: Ահա թե ինչու նա քննադատում է բացարձակ, միապետական կարգերը, մերժում դրանք: Միայն մի մարդը, անհատը ի վիճակի չէ ճշտորեն կառավարելու, նա կարող է սխալվել, իսկ միապետի սխալը դժբախտություն է ժողովրդի համար. «Եթե հասարակ ժողովրդից որևէ մեկը սխալվում է, ապա միայն իրեն է վնաս բերում, իսկ իշխանի սխալվելը ոչ միայն վնասներ, այլև երբեմն մեծամեծ պատուհասներ ու աշխարհավերություններ է բերում ամբողջ ազգին»: Հետևաբար, եզրակացնում է հեղինակը. «իշխանությունը ինչ-որ միմիայն մեկի դատողությանն ու կառա-*

*վարմանը չպետք է ենթակա լինի, այլ ամենալավագույնը կլիներ, եթե իշխանությունը անխախտելի սահմանադրությամբ և անեղծանելի օրենքներով կախում ունենար ընտիր-ընտիր ու մեծամեծ խորհրդականներից և տեսակ-տեսակ խորհրդարաններից»:*

*«Նոր տետրակի» հրատարակությունից հինգ տարի անց՝ 1778 թ., Շ. Շահամիրյանը Վենետիկի Մխիթարյանների տպարանում լույս է ընծայում Հայաստանի և մասամբ հայկական գաղթավայրերի քարտեզը, որը կարծես նախորդի հավելվածն էր: Քարտեզը ճշգրիտ պատկերացումներ էր տալիս Հայաստանի բնակավայրերի, լեռների, լճերի, դաշտավայրերի, սահմանների վերաբերյալ: Այն շրջափակված է ազգային հերոսների՝ Հայկի, Արամի, Տիգրան Մեծի և Տրդատ III-ի դիմանկարներով, նրա զարդերը դրոշներ, զենքեր և երաժշտական գործիքներ են, որոնք խորհրդանշում են ապստամբություն, զինված պայքար և խաղաղ կյանք: Քարտեզը նպաստելու էր հայ երիտասարդության հայրենասիրական դաստիարակությանը և նրան ոգեշնչելու էր ազատագրական պայքարում: 1786 թ. «Նոր տետրակի»՝ Հայաստանի պատմությանն ու աշխարհագրությանը վերաբերող հատվածը Վալյամ Վահանովը թարգմանել է ռուսերեն և 2 հազար տպաքանակով հրատարակել Ս. Պետերբուրգում: Գրքի հրատարակությանը նպաստել են իշխան Գ. Պոտյոմկինը, զորավարներ Ա. Սուվորովը, Մ. Կուտուզովը և ուրիշներ: Ակնհայտ է, որ այս հրատարակությամբ մադրասցիները ցանկացել են ռուս հասարակության ուշադրությունը հրավիրել Հայաստանի վրա: Առաջին անգամ է, որ ռուս ընթերցողը մանրամասն ծանոթանում էր հայ ժողովրդի պատմական անցյալին և նրա ներկա քաղաքական կացությանը:*

*«Նոր տետրակի» հրատարակումից հետո մադրասցիները մեծ ջանքեր թափեցին նրա օրինակները հայ իրականության մեջ տարածելու համար: Նրանք Արցախի մելիքներին ուղարկեցին «Նոր տետրակի» մի քանի օրինակ, ղենք ու զինամթերք, ռազմական գրականություն՝ միաժամանակ նրանց կոչ անելով ապստամբել պարսկական տիրապետության դեմ: «Նոր տետրակի» օրինակներ ուղարկվեցին նաև Գանձասարի կաթողի-*

*կոսին, Հերակլ II-ին և Ամենայն Հայոց կաթողիկոս Սիմեոն Երևանցուն: Հայոց հովվապետի վերաբերմունքը մադրասցիների գործունեության և այս հրատարակության նկատմամբ միանշանակ բացասական էր: Պատասխան նամակներում կաթողիկոսը խիստ հանդիմանում էր Շ. Շահամիրյանին և հորդորում վերջ տալ այդ ամենին, դադարեցնել մելիքներին վտանգավոր նամակներ գրելը: Նա նաև կարգադրում է փակել տպարանը, այրել «Նոր տետրակի» ամբողջ տպաքանակը, իսկ Մ. Բաղրամյանին հեռացնել իրենց միջավայրից: Կաթողիկոսական հատուկ կոնդակով Սիմեոն Երևանցին բանադրում է Մ. Բաղրամյանին և սպառնում նույնն անել նաև Մադրասի խմբակի մյուս անդամներին, եթե նրանք վերջ չտան իրենց «վնասավոր» գործունեությանը:*

*Կաթողիկոսի սպառնալիքները, սակայն, անզոր եղան կասեցնելու Մադրասի քաղաքական խմբակի լուսավորական ու հասարակական-քաղաքական գործունեությունը:*

*Մադրասի քաղաքական խմբակի մյուս կարևոր հրատարակությունը «Որոգայթ փառաց» երկասիրությունն է: Գիրքը բաղկացած է երկու մասից՝ ներածությունից, այսինքն պատմական-տեսական մասից, և Հայաստանի ապագա հանրապետության սահմանադրության նախագծից: Գրքի տիտղոսաթերթին, որպես հրատարակության թվական, նշված է 1773 թվականը և հեղինակի՝ Հ. Շահամիրյանի անուն ազգանունը: Պարզված է, որ գրքի պատմական-տեսական մասը գրվել է 1773 թվականին, իսկ բուն սահմանադրությունը՝ 1780-ական թթ. կեսերին: Ամբողջ գիրքը տպագրվել է 1788-1789 թթ. ընթացքում: Գրքի իսկական հեղինակը, ինչպես ասվեց, Շ. Շահամիրյանն է, թեև դրա ստեղծմանն իրենց մասնակցությունն են բերել նաև Հ. Էմինն ու Մ. Բաղրամյանը, իսկ մինչև 1774 թ., մինչև մահը՝ նաև Հակոբ Շահամիրյանը: Շ. Շահամիրյանը գիրքն ամբողջովին վերագրել է վաղամեռիկ որդուն՝ նրա հիշատակն անմահացնելու համար:*

*«Որոգայթ փառացի» առաջին մասում արվում են ընդհանուր բնույթի մի շարք հետաքրքիր դատողություններ: Այստեղ Շ. Շահամիրյանը վճռականորեն մերժում է կառավարման միապետական եղանակը և հիմնավորում օրենքի թագավորության*

գաղափարը: Նա այն միտքն է զարգացնում, որ մարդիկ բնությունից հավասար են ծնվում և հետևաբար՝ պետք է ունենան հավասար իրավունքներ: Մարդիկ պետք է թագավորեն միայն բնության և ոչ թե բանական արարածների վրա: Մարդկանց վրա թագավորելու են օրենքները՝ չեչտելով իրենց բնածին և բնական իրավունքները՝ ազատությունը և հավասարությունը: Օրենքները պետք է հավասարապես անհրաժեշտ ու պարտադիր լինեն բոլորի համար՝ մարդկանց օժտելով միանման իրավունքներով: Որևէ օրենք ընդունելուց առաջ պետք է լայն քննարկման դրվի և ապա միայն ընդունվի ձայների պարզ մեծամասնությամբ: Հեղինակը մերժում է ազնվականության և եկեղեցու դասային արտոնությունները, ճորտատիրությունն ու կախման մյուս ձևերը: Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի իշխանություն, որն արտահայտի ընդհանուրի կամքը, դրում է Շահամիրյանը, և որի գործողությունների մեջ դրսևորվի հասարակական շահը: Հետևաբար, ժողովուրդը պետք է հսկողություն սահմանի պետության գործունեության վրա: Նրան պետք է իրավունք վերապահվի փոխելու այն կառավարությունը, որը չի արտահայտում հասարակության պահանջները: Պետական կազմակերպության լավագույն ձևը հեղինակը համարում է հանրապետությունը և գտնում, որ միայն այդպիսի իշխանության դեպքում կլինի արդարություն և առաջադիմություն:

«Որոգայթ փառացի» առաջին մասում հեղինակը կոչ է անում իր հայրենակիցներին ելնել ազատագրական պայքարի և վերականգնել հայկական պետականությունը: Դա հայերի «բնական իրավունքն է», և նրանք պարտավոր են դա անել, հակառակ դեպքում կվերածվեն ճորտերի մի խաժամուժի:

«Որոգայթի» երկրորդ մասը ազատագրված Հայաստանի Հանրապետության հասարակական-քաղաքական կառուցվածքի ծրագիրն է, սահմանադրության նախագիծը, որն ունի 521 հոդված: Այն ներկայացնում է ապագա Հայաստանի պետական կառուցվածքը, կառավարման մարմինների ստեղծման կարգը, նրանց իրավասությունները, քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները: Առանձին հոդվածներ են նվիրված տնտեսության, ֆինանսների, լուսավորության, առողջապահու-

*թյան, դատարանի, ընտանիքի, զինված ուժերի կազմակերպման հարցերին և այլն: Ըստ «Որոգայթի» Հայաստանի Հանրապետության և՛ օրենսդրական, և՛ գործադիր մարմինները պետք է լինեն ընտրովի: Հեղինակը տեսականորեն հիմնավորում է այն միտքը, թե ամբողջ իշխանությունը ելնում է ժողովրդից, պատկանում է ժողովրդին ու հաշվետու է նրան:*

*Հայաստանի Հանրապետության օրենսդիր գերագույն մարմինը «Հայոց տունն» է (խորհրդարան, պառլամենտ), որի տանուտերերի (պատգամավորներ) ընտրությունը լինելու է երկաստիճան, առանց որևէ ցենզի, երեք տարին մեկ անգամ: «Հայոց տունն» ունենալու է իր նախագահությունը՝ կազմված տասնչորս տանուտերերից, որոնցից մեկն ընտրվում էր նախարար (նախագահ), իսկ մյուսը՝ Հայր Հայաստանյայց: Վերջինս ժամանակավոր պաշտոն էր, որի պարտականությունն էր ընդունել նախարարի և տանուտերերի երդումը: Նախարարը միաժամանակ ղլխավորելու է հանրապետության բարձրագույն գործադիր մարմինը՝ նախարարությունը (մինիստրների խորհուրդ), որը բաղկացած է լինելու նախարարից և տասներկու խորհրդակիցներից (տեղակալներ, մինիստրներ): Նախարարությունը պետք է ենթարկվի և հաշվետու լինի «Հայոց տան» առջև: Նախարարը օրենքների առաջին կատարողն է, զորքերի գլխավոր հրամանատարը: Նրան է վերապահվում պատերազմ հայտարարելու և հաշտություն կնքելու իրավունքները: «Հայոց տան» որոշումները չկատարող անբարեխիղճ նախարարը հեռացվում է պաշտոնից, իսկ նրա փոխարեն նշանակվում է խորհրդակիցներից մեկը:*

*Հայաստանի Հանրապետության բոլոր քաղաքացիները օրենքի առաջ հռչակվում են հավասար, վերացվում են դասային աստիճանները, նրանք ունենալու են խոսքի, անձի, դավանանքի և գործունեության լիակատար ազատություն՝ «յուրաքանչյուր ոք կարող է ազատապես խորհել, խոսել և գործել»: Թեև հանրապետության բոլոր ժողովուրդները հռչակվում են հավասար և ապահովվում է նրանց դավանանքի ազատությունը, բայց Առաքելական դավանանքին պատկանող հայերը հանդես են գալիս որպես տիրապետող ազգ և օգտվելու են մի շարք*

*արտոնություններից: Այսպես, ղեկավար բոլոր պաշտոններում կարող են ընտրվել, ինչպես նաև հողի սեփականատեր լինել միայն Առաքելական դավանանքին պատկանող հայերը և այլն: Աղքատներին, ծերերին ու հաշմանդամներին պետության կողմից տրվելու է պարտադիր բժշկական ու նյութական օգնություն:*

*Սահմանդրության նախագիծը խրախուսում է մասնավոր ձեռներեցությունը, արհեստագործությունը, առևտրի զարգացումը: Մասնավոր սեփականությունը հայտարարվում է սրբազան և անձեռնմխելի: Կրթությունը պարտադիր է հանրապետության դպրոցական տարիքի երկսեռ բոլոր երեխաների համար: Գյուղերում և քաղաքներում պետք է հիմնվեին դպրոցներ: Գիր ու դրականությունից բացի դպրոցներում պարտադիր պետք է ուսուցանեն ռազմագիտություն: Եկեղեցին բաժանվում էր դպրոցից, դպրոցը՝ եկեղեցուց: Շ. Շահամիրյանը մեծ ուշադրություն է դարձնում գիտությանը և մշակույթին. ««Հայոց տունը», - ասված է սահմանադրությունում, - պետք է ըստ ամենայնի հովանավորի արվեստը, հատկապես փիլիսոփայությունը, աստղաբաշխությունը, բժշկությունը, երաժշտությունը, ճարտարապետությունը»:*

*«Որոգայթի» հեղինակը մեծ ուշադրություն է դարձրել երկրի ռազմական ուժերին: Հանրապետության քսան տարին լրացած բոլոր քաղաքացիները պետք է տիրապետեին ռազմական արվեստին, բայց բանակ զինակոչվելու են վիճակահանությամբ՝ յուրաքանչյուր հարյուր երիտասարդից հինգը, յոթ տարի ժամկետով: Հայաստանը պետք է ունենար 90-հազարանոց մշտական զորք (69 հազարը՝ հետևակ, 21 հազարը՝ հեծելազոր): Խստագույնս արգելվում է Հայաստանից զենք արտահանել, երկիր ներմուծվող զենքի համար մաքս չի գանձվելու: Դատարանը լինելու է եռաստիճան՝ 1. Մայր կամ բարձրագույն, 2. Մնայուն, 3. Երդվյալների դատարան: Դատավարությունը լինելու է բաց, այն ընթանալու է գրավոր, մեղադրյալը ունենալու է դատապաշտպան:*

*«Նոր տետրակ, որ կոչի հորդորակ» և «Որոգայթ փառաց» երկասիրությունները հայ հասարակական-քաղաքական դաղա-*

*փարաբանության ամենափայլուն դրսևորումներից են, որոնք բացառիկ ազդեցություն ունեցան հետագա շրջանի հայ ազատագրական ու հասարակական մտքի զարգացման վրա:*

## 6. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ԾՐԱԳՐԵՐԸ XVIII ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

*ա. Մովսես Սարաֆյանի ծրագիրը: XVIII դարի երկրորդ կեսին հայ ազատագրական գաղափարախոսության մշակման գործում առանձնահատուկ դեր են կատարել ռուսահայ գաղթավայրերը: Ինչպես հայտնի է, նույն դարի 20-ական թվականներին Ռուսաստանը, միջազգային անբարենպաստ պայմաններից ելնելով, չկարողացավ անմիջական ռազմական օգնություն ցույց տալ հայկական ազատագրական շարժմանը: Փոխարենը ռուսական կառավարությունը ամբողջ XVIII դարի ընթացքում արտոնություններ էր շնորհում Ռուսաստան գաղթել ցանկացող հայերին՝ նրանց ցույց տալով ամեն տեսակ աջակցություն: Հայտնի են հատկապես Եկատերինա II-ի հրովարտակները, որոնցով Ռուսաստանում բնակվող հայերին տրվում էին տնտեսական և իրավական կարևոր առանձնաշնորհումներ: Ռուսաստանի նման քաղաքականությունը բխում էր սեփական տնտեսական և ռազմաքաղաքական շահերից: Հայերի միջոցով զարկ էր տրվում երկրի տնտեսությանը, մասնավորապես՝ արտաքին առևտրին և արդյունաբերությանը, յուրացվում էին հարավային սակավաբնակ տարածքները, պայմաններ ստեղծվում Ռուսաստանի սահմանները դեպի Անդրկովկաս ընդարձակելու ուղղությամբ:*

*XVIII դարի կեսերին տնտեսական ու մշակութային մեծ վերելք էին ապրում Ղզլարի, Մոզդոկի, Աստրախանի, իսկ դարի վերջերին՝ Մոսկվայի, Ս. Պետերբուրգի, Նոր Նախիջևանի, Գրիգորիուպոլսի և մյուս հայկական գաղթավայրերը: Ռուսահայ վաճառականության ու նորելուկ արդյունաբերողների ձեռքում կենտրոնանում էր հսկայական ֆինանսական կապիտալ, որի միջոցով նրանք փորձում էին ինչ-որ չափով ներազդել Ռու-*

*սաստանի արտաքին քաղաքականության վրա:*

*1768 թ. նոյեմբերին սկսված ռուս-թուրքական պատերազմը լրացուցիչ թափ հաղորդեց հայ ազատագրական ոգորումներին: Ռուսական դիվանագիտությունը, ոչ առանց միտումի, լուրեր էր տարածում, թե պատերազմի հիմնական նպատակներից մեկը քրիստոնյա ժողովուրդների ազատագրումն է: Ռուսական գործակալները մեծ ծավալի աշխատանք էին տանում հույների և սլավոնների շրջանում՝ նրանց թուրքերի դեմ ապստամբեցնելու համար: 1769 թ. կեսերին լուրեր տարածվեցին նաև այն մասին, թե ռուսական էքսպեդիցիոն զորքերը շուտով մտնելու են Անդրկովկաս և այստեղից արշավելու են Թուրքիա:*

*Կովկասյան տարածաշրջանում Ռուսաստանի արտաքին գործուն քաղաքականությունը, սկսված ռուս-թուրքական պատերազմը և Անդրկովկասում Թուրքիայի դեմ ռազմական գործողություններ սկսելու հեռանկարը նոր հույսեր էին ներշնչում ռուսահայերին, թե շուտով հնարավոր կլինի ազատագրել Մայր Հայրենիքը և վերականգնել հայկական անկախ պետականությունը: Այդ նոր հույսերի արտահայտությունն էր նաև աստրախանաբնակ մեծահարուստ ձեռնարկատեր, խոշոր վաճառական Մովսես Սարաֆյանի կազմած Հայաստանի ազատագրության ծրագիրը:*

*Մ. Սարաֆյանը ծագումով պարսկահայ էր: Պարսկաստանում և Թուրքիայում նա զբաղվել էր առևտրով: 1760-ական թվականների սկզբներին, իր շատ հայրենակիցների նման, բնակություն էր հաստատել Աստրախանում: Այստեղ զբաղվել էր մետաքսագործությամբ, 1763 թ. հիմնել մետաքսի փաբրիկա, իսկ Կասպից ծովի Աստրախանի առափնյա տարածքներից մեկում՝ նավաշինարան: Նա սերտ կապեր ուներ ռուսական կառավարական շրջանակներում և անգամ՝ արքունիքում: Մ. Սարաֆյանն իր ծրագիրը կազմել էր ռուսահայ բուրժուազիայի այնպիսի ազդեցիկ ներկայացուցիչների գիտությամբ, ինչպիսիք էին փաբրիկատերեր Գրիգոր Կամպանյանը, Հովհաննես Լազարյանը և ուրիշներ: Փաստորեն այս ծրագիրն արտահայտում էր վաճառականության շահախնդրությունները և որոշակի առնչություն ուներ Հովսեփ Էմինի ծրագրերի հետ:*

*Հայաստանի ազատագրության իր ծրագիրը Մ. Սարաֆյանը 1769 թ. մայիսի 8-ին ներկայացնում է Ռուսաստանի արտաքին գործերի կոլեգիային: Բացի ներածությունից և հետգրությունից, ծրագիրը բաղկացած էր 14 հոդվածներից: Ծրագրի համաձայն Թուրքիայի դեմ պետք է պատերազմ սկսեին Քարթլիի և Կախեթի թագավորներ Հերակլ II-ն ու Սողոմոնը: Ռուսական կառավարությունը աջակցելու էր վրաց թագավորներին, նրանց ցույց էր տրվելու ռազմական նշանակալի օգնություն: Ռուսաստանում բնակվող հայերից կազմվելու էր կամավորական բանակ՝ հայ զորավարի հրամանատարությամբ: Այդ բանակը, որին միանալու էին նաև Արցախի մելիքների զինված ուժերը, ուղարկվելու էր Վրաստան: Այստեղից ռուս-հայ-վրացական միացյալ բանակը ներխուժելու էր Արևելյան Հայաստան և ազատագրելու էր Երևանը: Ապա երկու ուղղություններով՝ Երևան-Բայազետ-Վան և Ախալցխա-Կարս-Կարին, միացյալ բանակը ռազմական գործողություններ էր սկսելու Թուրքիայի դեմ և ազատագրելու էր ամբողջ Արևմտյան Հայաստանը: Սարաֆյանի կարծիքով Թուրքիայի ռազմական ուժերն ու հնարավորությունները չպետք է գերագնահատվեն, քանզի նրա բանակն անկարգապահ է, ոչ կանոնավոր: Մ. Սարաֆյանը Հայաստանի ազատագրության գործը հիմնականում վերապահում էր հայերին, որոնք չպետք է բավարարվեին միայն ռուսներին համակրողների դերով, այլ ցուցաբերելու էին անհրաժեշտ կամք՝ ինչպես Արևելյան, այնպես էլ Արևմտյան Հայաստանում ստեղծելու կամավորական ջոկատներ, որոնք միանալու էին ազատարար բանակին: Հայերը նյութական ու ռազմական բոլոր միջոցները հավաքագրելու էին հանուն հայրենիքի ազատագրության: Ռուսական և վրացական բանակների ռազմական ամբողջ ծախսերը նույնպես հոգալու էր հայկական կողմը: Ազատագրված բոլոր բնակավայրերը պետք է տային ռազմատուգանք. վճարելու էին ոչ միայն մահմեդականները, այլև՝ հայերը: Անհրաժեշտության դեպքում վերցվելու էր նաև հայկական եկեղեցիների ու վանքերի թանկարժեք սպասքը: Առանձնապես մեծ գումարներ պետք է տրամադրեր հայ վաճառականությունը:*

*Ծրագրի համաձայն պատերազմի հաջող ավարտից հետո*

*Ռուսաստանի հովանավորության ներքո վերականգնվելու էր Հայկական պետականությունը և Արցախի մելիքներից մեկը նշանակվելու էր Հայաստանի թագավոր: Հայկական թագավորության և Ռուսաստանի միջև կնքվելու էր հատուկ պայմանագիր, ըստ որի հայերը համարվելու էին Ռուսական կայսրության դաշնակիցներ: Անհրաժեշտության դեպքում կողմերն օգնելու էին միմյանց: Ռուսաստանը հայերին պաշտպանելու էր թուրքերի ոտնձգություններից, իսկ հայերը զորք էին տրամադրելու Ռուսաստանին՝ պահանջի դեպքում:*

*Մ. Սարաֆյանի ծրագիրը ներկայացվեց Ռուսաստանի արտաքին գործերի կոլեգիայի պետ կոմս Ն. Պանինին, որը, սակայն, պատշաճ ուշադրություն չդարձրեց այս ուշագրավ փաստաթղթին: Նրան հետաքրքրեց միայն այն հանգամանքը, որ Կովկասում թուրքերի դեմ ապագա ռազմական գործողությունների ժամանակ կարելի էր օգտագործել նաև հայերի զինական ուժերը:*

*Այնուհանդերձ, Մ. Սարաֆյանի ծրագիրը հայ ազատագրական շարժման պատմության ուշագրավ էջերից է և օգտակար եղավ հետագա ծրագրերի մշակման ժամանակ:*

***բ. «Հյուսիսային» ու «Հարավային» նախագծերը:*** *XVIII դարի 70-ական թվականների վերջերին և 80-ական թվականների սկզբներին Ռուսաստանի արտաքին քաղաքականության գերխնդիրն է դառնում Անդրկովկասն ու Կասպից ծովի ափերը գրավելը: Ապագա արշավանքը գլխավորելու էր զորավար Ա. Սուվորովը: Հայաստանին վերաբերող հարցերը քննելու, ճշգրտելու, հայերին խրախուսելու, նրանց ուսների ռազմական արշավանքին մասնակից գարձնելու և պարսիկների դեմ համատեղ ռազմական գործողությունների մանրամասները ճշգրտելու համար 1780 թ. հունվարին Ս. Պետերբուրգում հրավիրվում է մի խորհրդակցություն, որին մասնակցում են Գ. Պոտյոմկինը, Ա. Սուվորովը, Ի. Գորիչը, Հ. Լազարյանը, Հ. Արղության-Երկայնաբազուկը: Հայերի այն հարցին, թե հնարավո՞ր է արդյոք արշավանքի միջոցով «նորոգել Մեծն Հայաստանը», այսինքն՝ վերականգնել Հայկական թագավորությունը, Պոտյոմկինը հուսադրում է, թե «կարելի է», միայն անհրաժեշտ է, որ Հայոց կաթո-*

*ղիկոսը Հայերին օգնելու խնդրանքով դիմի ռուսաց կառավարությանը:*

*1781 թ. սեպտեմբերի 2-ին Արցախի մելիքները օգնության աղերսով նամակ են հղում Եկատերինա II կայսրուհուն, որով խնդրում են Սուվորովի հրամանատարությամբ 10-հազարանոց ռուսական զորամաս ուղարկել Արցախ և հայտնում, թե իրենք պատրաստ են ապստամբելու: Մեկ այլ նամակով (մարտ, 1783 թ.) մելիքները կայսրուհուն խնդրում են փութացնել ազատարար արշավանքը և հայտնում են, որ Արցախն ի վիճակի է պարենով ապահովելու ռուսական բանակը: Նույն այդ ժամանակ ռուսական գործակալ Յա. Ռայնեգսը բանակցություններ է վարում Ամենայն Հայոց կաթողիկոս Ղուկաս Ա Կարնեցու հետ, որի արդյունքում Ս. Էջմիածնում հրավիրվում է մի հերթական գաղտնի խորհրդաժողով: Նորությունն այն էր, որ խորհրդաժողովին մասնակցում էր ռուսական կողմի ներկայացուցիչը: Խորհրգաժողովը գիմումնագիր է հղում կայսրուհուն և խնգրում նրա հովանավորությունն ու բարեհուսությունը: Առաջարկվում էր Հայաստան ուղարկել որոշ քանակությամբ զորք, որը եթե անգամ չմասնակցեր որևէ ռազմական գործողության, միայն իր ներկայությամբ կարող էր բազմապատկել հայերի քաջությունը:*

*Ռուսական արշավանքը նախատեսվում էր սկսել 1783 թ. գարնանը: Սուվորովի փոխարեն այն պետք է գլխավորեր իշխան Գ. Պոտյոմկինի ազգական գեներալ Պ. Պոտյոմկինը: Վերջինս հրահանգ էր ունենալու դրավել մերձկասպյան շրջանները, Անդրկովկասի պարսկական խանությունները և ռուսական հովանավորության ներքո ստեղծելու հայկական պետություն: Բայց ռուսական զորքերի նախատեսվող արշավանքն այս անգամ ևս հետաձգվեց անորոշ ժամանակով:*

*Հայոց ազատագրության ջատագովների համար կարևոր նշանակություն ունեցավ 1783 թ. հուլիսի 24-ին Հյուսիսային Կովկասի Գեորգիևսկ ամրոցում Ռուսաստանի և Վրաստանի միջև կնքված պայմանագիրը, որի համաձայն Վրաստանը մտնում էր Ռուսաստանի հովանավորության ներքո: Վրաց թագավորը հրաժարվում էր ինքնուրույն արտաքին քաղաքականություն վարելուց և հավատարմության երդում էր տալիս*

*կայսրուհուն: Անմիջապես ռուսական մի զորամաս ժամանեց Վրաստան, որը մշտապես պետք է գտնվեր Թիֆլիսում:*

*Գեորգիևսկի պայմանագիրը ուժեղացրեց Ռուսաստանի ազդեցությունը Անդրկովկասում և խթանեց հայ ազատագրական ոգորումների հետագա ծավալումը: Այս իրադարձության անմիջական արձագանք պետք է համարել Ստեփան Տեր-Սահակյանի բանագնացությունը Ռուսաստան: 1784 թ. ամռանը Երևանի հայերի ներկայացուցիչ Ս. Տեր-Սահակյանը, որ ռուսական դիվանագիտական շրջանակներում հորջորջվում էր իբրև «Արարատյան դեսպան», Հ. Լազարյանի և Հ. Արղության-Երկայնաբազուկի անձնական միջնորդությամբ ընդունելության է արժանանում ռուսական արքունիքում և կայսրուհուն ներկայացնում Ռուսաստանի հովանավորության ներքո անցնելու վերաբերյալ հայերի խնդրագիրը:*

*Հայ ազատագրական ձգտումների այս հերթական աշխուժացման շրջանում է, որ Հայաստանն ազատագրելու և Հայկական պետականությունը վերականգնելու խնդիրը դառնում է առավել քան իրական ու մոտալուտ: Շարժման գործիչները մշակում և ռուսական կառավարությանն են ներկայացնում Հայաստանի ազատագրության և հայ-ռուսական դաշնագրի երկու նախագիծ: Նախագծերից մեկը՝ «Կերպ դաշնադրության ի մեջ երկու ազգաց՝ Ռուսաց և Հայոց» խորագրով, որը հայտնի է նաև «Հյուսիսային ծրագիր» անունով, 1783 թ. հեղինակել էր Հովսեփ արքեպիսկոպոս Արղության-Երկայնաբազուկը (1743-1801): Նա ժամանակի աչքի ընկնող ամենահեղինակավոր հայ հոգևորականներից էր, սերում էր հինավուրց ազնվականական ընտանիքից, որի տիրույթները գտնվում էին Լոռիում: 1773 թ. Հովսեփ եպիսկոպոսը նշանակվել էր ռուսահայոց հոգևոր թեմի առաջնորդ և կարևոր դեր էր խաղում Ռուսաստանի արևելյան և մասնավորապես կովկասյան քաղաքականության մշակման գործում: Նա եղել է 1783 թ. Գեորգիևսկի պայմանագրի նախաձեռնողներից մեկը:*

*«Հյուսիսային ծրագրի» կազմմանը անմիջական մասնակցություն է ունեցել նաև հայ ազատագրական շարժման նշանավոր գործիչ, իսկական պետական խորհրդական Հովհաննես Լա-*

*զարյանը (1735–1801): Նա սերում էր մեծահարուստ վաճառականական ընտանիքից, որը 1747 թ. Նոր Ջուղայից տեղափոխվել էր նախ՝ Աստրախան, ապա՝ Մոսկվա, և կարճ ժամանակամիջոցում դարձել Ռուսաստանի ամենահարուստ կալվածատերարդյունաբերողներից մեկը: 1774 թ. Լազարյան ընտանիքին շնորհվում է ռուսական ժառանգական ազնվականի տիտղոս: Լազարյանները չափազանց մոտ էին արքունիքին և որոշակի ազդեցություն ունեին Ռուսաստանի արևելյան քաղաքականության մշակման գործում:*

*«Հյուսիսային ծրագրի» նախագիծը, որ բաղկացած էր 18 հոդվածից, արքունիքին ներկայացվեց 1783 թ.: Նախագծի համաձայն ռուսական զինված ուժերի միջոցով Հայաստանն ազատագրվելու էր պարսկա-օսմանյան տիրապետությունից և վերականգնվելու էր Հայկական թագավորությունը: Հայաստանն ազատագրվելուց հետո Հայոց թագավորի ընտրության իրավունքը վերապահվում էր ռուսաց կայսրուհուն, որը կարող էր թագավոր ընտրել կա՛մ հայերից, կա՛մ մերձավոր պալատական ռուսներից: Երկրորդ դեպքում ծրագրի հեղինակն ակնարկում էր նշանավոր իշխան Գ. Պոտյոմկինին, որն անմիջականորեն գլխավորում էր Ռուսաստանի կովկասյան քաղաքականության կենսագործումը և ի մոտո ծանոթ էր հայկական գործերին: Անկախ ազգությունից՝ Հայոց թագավորը պետք է ընդուներ հայոց դավանանք, օծվեր Ս. Էջմիածնում և երկիրը կառավարեր հայկական օրենքներով: Հայկական թագավորությունն ունենալու էր իր զինանշանը, դրոշը, պատվո նշանները, հատելու էր սեփական դրամ: Մայրաքաղաքը պետք է լիներ Վաղարշապատը կամ Անին և կամ Արարատյան նահանգի որևէ այլ նշանավոր բնակավայր: Ամենայն Հայոց կաթողիկոսի ընտրությունը կատարվելու էր Հայոց թագավորի առաջարկությամբ: Հայ նախարարական և իշխանական տների ներկայացուցիչները կարող էին հետ ստանալ իրենց ժառանգական տիրույթները: Թեև առանձին կետով նշված էր, որ Հայկական թագավորությունում չպետք է լինեն ճորտեր, ճորտական կարգեր, բայց պահպանվելու էին մուլքադարական հարաբերությունները, երբ կարելի էր նվիրել կամ վաճառել ամբողջ գյուղեր՝ բնակիչներով, հողով ու ջրով:*

*Հայկական թագավորությունն ու Ռուսական կայսրությունը միմյանց հետ կապված էին լինելու հավիտենական բարեկամությամբ: Բայց Հայաստանը վասալական կախման մեջ էր գտնվելու Ռուսաստանից՝ ոսկով և արծաթով վճարելու էր հարկ, իսկ անհրաժեշտության դեպքում՝ տրամադրելու էր զինված ուժեր: Ռուսական ռազմական մի ջոկատ՝ ռուս գեներալներից մեկի հրամանատարությամբ, մշտապես գտնվելու էր Հայաստանում՝ երկիրը Թուրքիայի և Պարսկաստանի հարձակումներից պաշտպանելու համար: Հայոց թագավորի ժառանգներից մեկը պետք է մնար ցարական արքունիքում և լինելու էր Հայաստանի ներկայացուցիչն այնտեղ: Ռուսաստանի և Հայաստանի միջև կնքվելու էր առևտրական պայմանագիր: Առևտրի համար Ռուսաստանը Կասպից ծովի ափին Հայաստանին էր տրամադրելու մի նավահանգիստ, որը լինելու էր Հայաստանի սեփականությունը:*

*Ըստ Հ. Արղության-Երկայնաբազուկի մշակած Հայաստանի ազատագրության «Հյուսիսային ծրագրի»՝ ազատագրված Հայաստանը գտնվելու էր Ռուսաստանի գերիշխանության ներքո և այստեղ տիրապետող էին լինելու ավատատիրական, միապետական կարգերը:*

*Հայաստանի ազատագրության «Հարավային ծրագիրը», ինչպես տեսանք, մշակվել էր XVIII դ. 80-ական թվականների կեսերին Շ. Շահամիրյանի կողմից: Այն լիովին բխում էր «Որոգայթ փառացի» սկզբունքներից: Նախագիծը բաղկացած էր 20 հոդվածից: Այս նախագծի համաձայն Հայաստանը ազատագրվելու էր նույնպես ռուսական զորքերի կողմից և դառնալու էր ինքնուրույն պետություն: Հայաստանը հռչակվելու էր հանրապետություն, որի գլուխ կանգնելու էր ազգությամբ հայ և հայ Առաքելական դավանանքին պատկանող նախագահ: Հանրապետությունը կառավարվելու էր հայկական օրենքներով, ունենալու էր խորհրդարան, մշտական դեսպան Ս. Պետերբուրգում: Հայաստանի հանրապետության և Ռուսական կայսրության միջև կնքվելու էր բարեկամական անխախտ պայմանագիր: Հայաստանը պարտավորվում էր Ռուսաստանի բարեկամների հետ լինել բարեկամ, իսկ թշնամիների հետ՝ թշնամի: Որ-*

*պես բարեկամության, հավատարմության ու հնազանդության նշան, Հայաստանը պարտավորվում էր յուրաքանչյուր տարի Ռուսաստանին վճարել խորհրդանշական հարկ (մոտավորապես 85 գրամ ոսկի և այլն): Կայսեր պահանջով անհրաժեշտության դեպքում Հայաստանը նրա տրամադրության տակ էր դնելու 6 հազար զինվոր և ընդհակառակը՝ ռուսական 6 հազարանոց զորքը՝ «հանուն երկրի պահպանության և հայոց ազգի», տեղակայվելու էր Հայաստանի ամրոցներում և քաղաքներում: Այդ զորամասի ծախսերը հոգալու էր հայկական կողմը: 20 տարվա ընթացքում ռուսական բանակը մաս առ մաս հանվելու էր Հայաստանից: Հայ և ռուս առևտրականները իրավունք էին ստանում համապատասխան մաքս վճարելով ազատորեն առևտուր անել երկու երկրներում: Նախագծում հոդվածներ կային նաև իրավարանական ու կրոնադավանաբանական խնդիրների վերաբերյալ, պարտքերի վճարման մասին և այլն:*

*Այսպիսով, հայ-ռուսական դաշնադրության Շ. Շահամիրյանի նախագծով Հայաստանը դառնալու էր պառլամենտական կարգերով առաջնորդվող բուրժուական հանրապետություն: Ի տարբերություն «Հյուսիսային ծրագրի», որի համաձայն Հայաստանը որոշակի վասալական կախման մեջ էր գտնվելու Ռուսաստանից, ըստ «Հարավային ծրագրի» Հայաստանի կախվածությունը Ռուսաստանից լինելու էր աննշան ու կրելու էր ձևական բնույթ: Անշուշտ, XVIII դարի վերջերի պատմական պայմաններում Հ. Արղության-Երկայնաբազուկի ծրագիրն ավելի իրատեսական էր և կարող էր ընդունելի լինել ճորտատիրական-միապետական Ռուսաստանի համար: Իսկ Շ. Շահամիրյանի ծրագիրը, թեև առաջադիմական էր, սակայն կտրված էր իրականությունից և փաստորեն մնում էր որպես գեղեցիկ երազանք:*

*Հայ-ռուսական դաշնագրի այս երկու նախագծերն էլ ներկայացվեցին ցարական արքունիք: Ռուսական կառավարությունը, որ նախապատրաստվում էր արշավելու դեպի հարավ, ծավալվելու դեպի Անդրկովկաս, անշուշտ որոշակիորեն հետաքրքրվեց այս ծրագրերով, ուստի չարունակեց անորոշ խոստումներ տալ հայերին և ոչ ավելի: Կայսրությունը չէր կարող պայմանագիր կնքել դեռևս գոյություն չունեցող պետության*

*հետ: Ռուս մի բարձրաստիճան պաշտոնյա Հ. Արղության-Երկայնաբազուկին անկեղծորեն ասել է. «Թագավորները միայն կարող են թագավորների հետ գաշինք կնքել, ո՞վ է Ձեր ազգի թագավորը, որ համարձակվում եք դաշինք խնդրել»: Սա ցույց է տալիս, թե հայ գործիչների կեցվածքը որքան ռոմանտիկ էր, հուզական ու անիրական: Եթե հայկական կողմն իր եռանդն ու միջոցները կենտրոնացնում էր խնդրի հոգեբանական, բարոյական հարցադրումների վրա, ապա ռուսական կողմը հաշվենկատ էր, սառնարյուն և առաջնորդվում էր ստեղծված ռեալ իրավիճակով:*

*Այսպիսով, հայ ազատագրական շարժման գաղափարը չհասած իր մեծ նպատակին՝ մնաց որպես ցանկալի երազ, և այդպես էլ մնաց մինչև XVIII դարի ավարտը: XIX դարի սկզբներին միայն այդ երազանքը փոխարինվեց Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կողմից նվաճվելու ռեալ իրողությամբ:*

# ՀԱՆՁՆԱՐԱՐՎՈՂ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ

*ա) Սկզբնաղբյուրներ*


***Աբրահամ Երեւանցի***, *Պատմութիւն պատերազմացն 1721–1736 թուի, առաջաբան, բնագիր և ծանոթություններ Սահակ Ճեմճեմյան, Վենետիկ, 1977:*

***Աբրահամ Կրետացի***, *Պատմութիւն, քննական բնագիր, ռուսերեն թարգմանություն, առաջաբան և ծանոթություններ Ն. Կ. Կորղանյանի, Երևան, 1973:*

*«Դավիթ Բեկ կամ պատմություն Ղափանցոց», թարգմանությունը և առաջաբանը Արշակ Մադոյանի, Երևան, 1992:*

***Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալյանց***, *Համառոտ պատմություն Աղվանից երկրի, թարգմանությունը, առաջաբանը և ծանոթությունները՝ Բագրատ Ուլուբաբյանի, Երևան, 1997:*

*«Հովսեփ էմինի կեանքն ու արկածները», անգլերեն բնագրեն թարգմանեց՝ Հ. Խաչմանյան, Բեյրութ, 1958:*

*«Նոր տետրակ, որ կոչվում է հորդորակ», թարգմանությունը գրաբար բնագրից և ծանոթությունները Պ. Մ. Խաչատրյանի, Երևան, 1991:*

*«Որոգայթ փառաց», թարգմանությունը գրաբար բնագրից և ծանոթությունները Պ. Մ. Խաչատրյանի, Երևան, 2002:*


*բ) Ուսումնասիրություններ*


***Աբրահամյան Ա. Գ.***, *Իսրայել Օրի, Երևան, 1978:*

***Անասյան Հ. Ս.***, *XVII դարի ազատագրական շարժումներն Արևմտյան Հայաստանում (պատմական հետազոտություն), Երևան, 1961:*

***Բարխուդարյան Վ. Բ., Ոսկանյան Վ. Կ.***, *Հայ-ռուսական պատմական կապերը և Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, Երևան, 1978:*

***Գրիգորյան Գ. Հ.***, *Հայ առաջավոր հասարակական - քաղաքական մտքի պատմությունից (XVIII դարի երկրորդ կես), Երևան, 1957:*

***Դիլոյան Վ. Ա.***, *Լազարյանների հասարակական - քաղաքական գործունեության պատմությունից (XVIII դարի երկրորդ կես), Երևան, 1966:*

***Զուլալյան Մ. Կ.***, *Արևմտյան Հայաստանը XVI – XVIII դդ., Երևան, 1980:*

***Զուլալյան Մ. Կ.***, *Հայ ժողովրդի XIII – XVIII դարերի պատմության հարցերը ըստ եվրոպացի հեղինակների, գիրք Ա, Քաղաքական պատմություն, Երևան, 1990:*

***Թելունց Մ. Մ.**, Հայ ազգային-ազատագրական շարժումը XVIII դարի երկրորդ կեսին և իրավա-քաղաքական միտքը, Երևան, 1995:*

***Լեո**, Հայոց պատմություն, հատ. 3, գիրք 2, տե՛ս **Լեո**, Երկերի ժողովածու, հատ. 3, Երևան, 1973:*

***Խաչատրյան Հ. Ն.**, Հայ և ռուս ժողովուրդների զինակցությունը ռուսական բանակի Կասպիական արշավանքում, Երևան, 1972:*

***Կնյազյան Հ. Ա.**, Ազատագրական պայքարը Դավիթ Բեկի գլխավորությամբ, Երևան, 1963:*

*«Հայ ժողովրդի պատմություն», ՀԳԱ ակադեմիայի հրատ., հատ. IV, Երևան, 1972:*

***Հովհաննիսյան Ա. Գ.**, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք 1–2, Երևան, 1957, 1959:*

***Հովհաննիսյան Ա. Գ.**, Պատմագիտական ուսումնասիրություններ, Ս. Էջմիածին, 2007:*

***Ղահրամանյան Կ. Հ., Հովհաննիսյան Վ.**, 1500-ամյա հայկական սահմանադրություն, Երևան, 1996:*

***Մաղալյան Ա. Վ.**, Արցախի մելիքությունները և մելիքական տները XVII–XIX դդ., Երևան, 2007:*

***Մարտիրոսյան Վ. Մ.**, Հայ և վրաց ժողովուրդների համագործակցությունը ազատագրական պայքարում (XVIII դարի 20-ական թվականներ), Երևան, 1971:*

***Մկրտումյան Լ.**, Աղվանից (Գանձասարի) կաթողիկոսությունը XVII – XIX դդ., Երևան, 2006:*

***Մնացականյան Աս. Շ.**, 18-րդ դարում գրված հայ-ռուսական դաշնագրային երկու նախագծերի գնահատման հարցի շուրջ, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 4, Երևան, 1958:*

***Ջոբանյան Պ. Ա.**, Հայ – ռուս – վրացական փոխհարաբերությունները ԺԸ դարի երկրորդ կեսին, Ս. Էջմիածին, 2006:*

*«XVI – XVIII դարերի հայ ազատագրական շարժումները և հայ դաղթավայրերը» (ժողովածու), Երևան, 1989:*

***Ութուջյան Ա. Ա.**, Հայկական պետականության վերականգնման փորձ ԺԵ դարի կեսերին, տե՛ս «Հայկազյան հայագիտական հանդես», հատ. ԺԹ, Բեյրութ, 1999:*

***Քյուրտյան Հ.**, Իսրայել Օրի, Վենետիկ, 1960 :*

***Иоаннисян А. Р.**, Иосиф Эмин, Ереван, 1989.*

***Иоаннисян А. Р.**, Россия и армянское освободительное движение в 80-х годах XVIII столетия, Ереван, 1990.*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՊԵՏՐՈՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ (XV ԴԱՐԻ ԿԵՍ – XVIII ԴԱՐԻ ՎԵՐՋ)

*Կազմի ձևավորումը՝ Գ. Վ. Մարիկյանի*
*Տեխ. խմբագիր՝ Վ. Զ. Բդոյան*
*Համ. ձևավորումը՝ Ա. Խ. Աղուզումցյանի*

*Ստորագրված է տպագրության՝ 31.08.2010 թ.:*
*Չափսը 60x84 1/16: Թուղթ՝ օֆսեթ: Հրատ. 6.2 մամուլ, տպագր. 7.25 մամուլ + 8 էջ ներդիր = պայմ. 6.7 մամուլի:*
*Տպաքանակ՝ 200: Պատվեր՝ 66:*

*ԵՊՀ Հրատարակչություն, Երևան, Ալ. Մանուկյան 1*

*ԵՊՀ տպագրատուն, Երևան, Արովյան, 52*